ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք





# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՄԱՐՏ **3** 1985



ՄԻԽԱՅԻԼ ՍԵՐԳԵԵՎԻՉ ԳՈՐԲԱՉՈՎ
ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

3

ՄԱՐՏ, 1985
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический
и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ՄԻԽԱՅԻԼ ՍԵՐԳԵԵՎԻՉ ԳՈՐԲԱՉՈՎ

*Միխայիլ Սերգեևիչ Գորբաչովը ծնվել է 1931 թվականի մարտի 2-ին Ստավրոպոլի երկրամասի Կրասնոգվարդեյսկի շրջանի Պրիվոլնոյե գյուղում, գյուղացու ընտանիքում։*

*1941—1945 թվականների Հայրենական մեծ պատերազմից հետո նա 15 տարեկան հասակում սկսում է իր աշխատանքային գործունեությունը։ Աշխատում է որպես մեքենատրակտորային կայանի մեխանիզատոր։ 1952 թվականին ընդունվում է ՍՄԿԿ-ի անդամ։ 1955 թվականին ավարտում է Մոսկվայի Մ. Վ. Լոմոնոսովի անվան պետական համալսարանը (իրավաբանական ֆակուլտետը), իսկ 1967 թվականին՝ Ստավրոպոլի գյուղատնտեսական ինստիտուտը, ստանալով գիտնական տնտեսագետ-գյուղատնտեսի մասնագիտություն։*

*1955 թվականից Մ. Ս. Գորբաչովը կոմերիտական և կուսակցական աշխատանքում է։ Աշխատում է Ստավրոպոլի երկրամասում, որպես ՀամԼԿԵՄ Ստավրոպոլի քաղկոմի առաջին քարտուղար, կոմերիտմիության երկրկոմի պրոպագանդայի ու ագիտացիայի բաժնի վարիչի տեղակալ, իսկ հետո որպես երկրորդ և առաջին քարտուղար։*

*1962 թվականի մարտին Մ. Ս. Գորբաչովը առաջ է քաշվում որպես Ստավրոպոլի տերիտորիալ արտադրական կոլտնտեսային-սովխոզային վարչության կուսկազմակերպիչ, իսկ այդ նույն տարվա դեկտեմբերին հաստատվում է որպես ՍՄԿԿ երկրկոմի կուսակցական մարմինների բաժնի վարիչ։*

*1966 թվականի սեպտեմբերին նա ընտրվում է կուսակցության Ստավրոպոլի քաղկոմի առաջին քարտուղար։ 1968 թվականի օգոստոսից Մ. Ս. Գորբաչովը աշխատում է որպես ՍՄԿԿ Ստավրոպոլի երկրկոմի երկրորդ քարտուղար, իսկ 1970 թվականի ապրիլին ընտրվում է առաջին քարտուղար։*

*Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի անդամ է 1971 թվականից։ Եղել է կուսակցության XXII, XXIV, XXV և XXVI համագումարների պատգամավոր։ 1978 թվականին ընտրվում է ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար, 1979 թվականին՝ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու։ 1980 թվականի հոկտեմբերին Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածուից փոխադրվում է քաղբյուրոյի անդամ։ ՍՍՀՄ 8—11-րդ գումարումների Գերագույն սովետի դեպուտատ է, Միության սովետի արտաքին գործերի հանձնաժողովի նախագահ։ ՌՍՖՍՀ 10—11-րդ գումարումների Գերագույն սովետի դեպուտատ է։*

*Միխայիլ Սերգեևիչ Գորբաչովը Կոմունիստական կուսակցության և սովետական պետության նշանավոր գործիչ է։ Այն բոլոր պոստերում, որ նրան հանձնարարում է կուսակցությունը, նա աշխատում է իրեն հատուկ ձեռներեցությամբ, եռանդով և անձնվիրությամբ, իր գիտելիքները, հարուստ փորձը և կազմակերպչական տաղանդը նվիրաբերում կուսակցության քաղաքականության կենսագործմանը, անձնվիրաբար ծառայում է Լենինի մեծ գործին, աշխատավոր ժողովրդի շահերին։*

*Կոմունիստական կուսակցությանը և սովետական պետությանը մատուցած ծառայությունների համար Մ. Ս. Գորբաչովը պարգևատրված է Լենինի երեք շքանշանով, Հոկտեմբերյան հեղափոխության, Աշխատանքային կարմիր դրոշի, «Պատվո նշան» շքանշաններով ու մեդալներով։*

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1985 թվականի մարտի 11-ին տեղի ունեցավ Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի արտահերթ պլենում:

Կենտկոմի քաղբյուրոյի հանձնարարությամբ պլենումը բացեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, Կենտկոմի քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովը:

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Կ. Ու. Չեռնենկոյի մահվան առթիվ պլենումի մասնակիցները մեկ րոպե վշտալի լռությամբ հարգեցին Կոնստանտին Ուստինովիչ Չեռնենկոյի հիշատակը:

Պլենումը նշեց, որ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, սովետական ամբողջ ժողովուրդը ծանր կորուստ կրեցին: Կյանքից հեռացավ կուսակցական ու պետական ականավոր գործիչը, հայրենասերն ու ինտերնացիոնալիստը, կոմունիզմի իդեալների հաղթանակի և աշխարհի խաղաղության հետևողական մարտիկը:

Կոնստանտին Ուստինովիչ Չեռնենկոյի բովանդակ կյանքը մինչև վերջ նվիրաբերվեց լենինյան կուսակցության գործին, սովետական ժողովրդի շահերին: Կուսակցությունը որտեղ էլ նրան ուղարկում էր, նա միշտ իրեն հատուկ անձնվիրությամբ պայքարում էր ՍՄԿԿ-ի քաղաքականության կենսագործման համար:

Կոնստանտին Ուստինովիչ Չեռնենկոն մեծ ուշադրություն էր նվիրում զարգացած սոցիալիզմի կատարելագործման, տնտեսական ու սոցիալական զարգացման խոշոր խնդիրների լուծման, սովետական ժողովրդի բարեկեցության ու կուլտուրայի բարձրացման, մասսաների ստեղծագործական ակտիվության հետագա ծավալման, գաղափարախոսական աշխատանքի բարելավման, կարգապահության, օրինականության և կարգուկանոնի ամրապնդման կուրսի հետևողական իրագործմանը:

Կոնստանտին Ուստինովիչ Չեռնենկոն մեծ ավանդ է ներդրել սոցիալիզմի եղբայրական երկրների հետ բազմակողմանի համագործակցության հետագա զարգացման, սոցիալիստական տնտեսական ինտեգրացման իրականացման, սոցիալիստական ընկերակցության դիրքերի ամրապնդման գործում: Նրա ղեկավարությամբ հաստատակամորեն ու հետևողականորեն կենսագործվում էին տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքները, վճռական հակահարված էր հասցվում իմպերիալիզմի ագրեսիվ դիտավորություններին, անդուլ պայքար էր մղվում իմպերիալիզմի կողմից պարտադրված սպառազինությունների մրցավազքի դադարեցման, միջուկային պատերազմի սպառնալիքի վերացման, ժողովուրդների հուսալի անվտանգության ապահովման համար:



Կոնստանտին Ուստինովիչ Չեռնենկոն աչքի լույսի պես էր պահպանում մեր կոմունիստական կուսակցության միասնությունը, Կենտրոնական կոմիտեի և նրա քաղբյուրոյի գործունեության կոլեկտիվ բնույթը: Նա միշտ ձգտում էր, որ կուսակցությունը բոլոր մակարդակներով գործի որպես համախմբված, ներդաշնակ ու մարտական օրգանիզմ: Նա կոմունիստների խոսքի ու գործերի միասնության մեջ էր տեսնում մեր բոլոր հաջողությունների երաշխիքը, թերությունների հաղթահարումը, վստահաքայլ առաջընթացի գրավականը:

Պլենումն ընդգծեց, որ այս վշտալի օրերին կոմունիստները, ամբողջ սովետական ժողովուրդը է՛լ ավելի սերտորեն են համախմբվում կուսակցության Կենտրոնական կոմիտեի և նրա քաղբյուրոյի շուրջը: Սովետական մարդիկ, հանձին կուսակցության, լիակատար հիմունքով տեսնում են հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժին և լի են վճռականությամբ՝ անձնվիրաբար պայքարելու հանուն ՍՄԿԿ-ի լենինյան ներքին ու արտաքին քաղաքականության իրականացման:

Կենտկոմի պլենումի մասնակիցները խոր ցավակցություն հայտնեցին հանգուցյալի հարազատներին ու մերձավորներին:

Կենտկոմի պլենումը քննարկեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընտրելու հարցը:

Քաղբյուրոյի հանձնարարությամբ այդ հարցի առթիվ ճառով հանդես եկավ քաղբյուրոյի անդամ ընկ. Ա. Ա. Գրոմիկոն: Նա առաջարկեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընտրել ընկ. Մ. Ս. Գորբաչովին:

Պլենումը միաձայն ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար ընտրեց ընկ. Մ. Ս. Գորբաչովին:

Այնուհետև պլենումում ելույթ ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովը: Նա խոր երախտագիտություն հայտնեց ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի կողմից իրեն ցույց տրված բարձր վստահության համար, նշեց, որ շատ լավ է հասկանում, թե ինչքան մեծ է դրա հետ կապված պատասխանատվությունը:

Ընկ. Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեին հավաստիացրեց, որ ինքը բոլոր ուժերը կգործադրի, որպեսզի հավատարմորեն ծառայի մեր կուսակցությանը, մեր ժողովրդին, Լենինի մեծ գործին, որպեսզի անշեղորեն իրականացվեն ՍՄԿԿ-ի ծրագրային հիմնադրույթները, ապահովվի հաջորդայնությունը ՍՍՀՄ-ի տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդման, սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման, խաղաղության ամրապնդման խնդիրների լուծման գործում, որպեսզի հաստատակամորեն մարմնավորվի կոմունիստական կուսակցության և սովետական պետության լենինյան ներքին ու արտաքին քաղաքականությունը:

Դրանով Կենտկոմի պլենումն ավարտեց իր աշխատանքը:

---

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿԵՐ Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ՃԱՌԸ

## ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում 1985 թվականի մարտի 11-ին

*Թանկագին ընկերնե՛ր։*

*Մեզ բոլորիս, մեր ամբողջ կուսակցությանն ու երկրին ծանր վիշտ համակեց։ Կյանքից հեռացավ հավատարիմ լենինյանը, Սովետական Միության կոմունիստական կուսակցության և սովետական պետության, միջազգային կոմունիստական շարժման ականավոր գործիչը, զգայուն հոգու և կազմակերպչական մեծ տաղանդի տեր մարդը՝ Կոնստանտին Ուստինովիչ Չեռնենկոն։*

*Մեծ ու փառավոր ուղի անցավ Կոնստանտին Ուստինովիչը։ Ամեն մի տեղամասում, որ նրան հանձնարարում էր կուսակցությունը, ավելի ու ավելի լրիվ էին բացահայտվում նրա տաղանդը, մարդկանց հետ աշխատելու կարողությունը։ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահի պոստում Կոնստանտին Ուստինովիչ Չեռնենկոն բոլոր ուժերն ու գիտելիքները նվիրաբերում էր երկրի էկոնոմիկայի զարգացմանը, ժողովրդի բարեկեցության և կուլտուրայի աճին, հայրենիքի անվտանգության ապահովմանը, աշխարհի խաղաղության պահպանմանն ու ամրապնդմանը։*

*Կոնստանտին Ուստինովիչ Չեռնենկոն աչքի լույսի պես էր պահպանում կոմունիստական կուսակցության միասնությունը, Կենտրոնական կոմիտեի և նրա քաղբյուրոյի գործունեության կոլեկտիվ բնույթը։ Նա միշտ ձգտում էր, որ կուսակցությունը բոլոր մակարդակներում գործի որպես համախմբված, համերաշխ և մարտական օրգանիզմ։ Նա կոմունիստների խոհերի ու գործերի միասնության մեջ էր տեսնում հաջողությունների, թերությունների հաղթահարման գրավականը, առաջընթացի գրավականը։*

*XXVI համագումարում, Կենտկոմի ետհամագումարյան պլենումներում Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովի և Կոնստանտին Ուստինովիչ Չեռնենկոյի գործուն մասնակցությամբ մշակված ստրատեգիական կուրսը եղել է ու մնում է անփոփոխ։ Դա երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու, հասարակության կյանքի բոլոր կողմերը կատարելագործելու կուրս է։ Խոսքը վերաբերում է արտադրության նյութատեխնիկական բազայի վերափոխմանը։ Խոսքը վերաբերում է հասարակական հարաբերությունների, ամենից առաջ՝ տնտեսական հարաբերությունների համակարգի կատարելագործմանը։ Խոսքը նաև վերաբերում է հենց մարդու զարգացմանը, նրա կյանքի ու աշխատանքի նյութական պայմանների, նրա հոգևոր կերպարի որակական բարելավմանը։*

*Մենք պետք է հասնենք այն բանին, որ վճռական շրջադարձ կատարվի ժողովրդական տնտեսությունը ինտենսիվ զարգացման ռելսերի վրա փոխադրելու գործում։ Մենք պետք է, պարտավոր ենք կարճ ժամանակամիջոցում դուրս գանք ամենաառաջավոր գիտատեխնիկական դիրքերը, համրային աշխատանքի արտադրողականության ամենաբարձր համաշխարհային մակարդակին։*



*Այդ խնդիրը ավելի հաջող և ավելի արագ լուծելու համար անհրաժեշտ է այսուհետև էլ հաստատակամորեն կատարելագործել տնտեսական մեխանիզմը և կառավարման ամբողջ համակարգը։ Ընթանալով այդ ուղիով, ընտրելով օպտիմալ լուծումներ, կարևոր է ստեղծագործաբար կիրառել սոցիալիստական տնտեսավարման հիմնարար սկզբունքները։ Դա նշանակում է անշեղորեն իրականացնել էկոնոմիկայի պլանային զարգացումը, ամրապնդել սոցիալիստական սեփականությունը, ընդլայնել ձեռնարկությունների իրավունքները, բարձրացնել նրանց ինքնուրույնությունը և պատասխանատվությունը, ուժեղացնել շահագրգռվածությունը աշխատանքի վերջնական արդյունքներով։ Դա նշանակում է ամբողջ տնտեսական զարգացումը վերջին հաշվով ենթարկել սովետական մարդկանց շահերին։*

*Կուսակցությունը անշեղորեն կվարի իր մշակած սոցիալական քաղաքականությունը։ Ամեն ինչ հանուն մարդու, հանուն մարդու բարօրության՝ այս ծրագրային դրույթը պետք է հարստացվի է՛լ ավելի խոր ու կոնկրետ բովանդակությամբ։ Հասկանալի է, որ մարդու կենսապայմանների բարելավումը պետք է հիմնվի ընդհանուր գործի մեջ նրա հարաճուն ավանդի վրա։ Այնտեղ, որտեղ շեղումներ են թույլ տրվում այս սկզբունքից, անխուսափելիորեն խախտվում է սոցիալական արդարությունը, որը սոցիալիստական հասարակության միասնության և կայունության կարևորագույն գործոնն է։*

*Կուսակցությունը ներքին քաղաքականության արմատական խնդիրներից մեկը համարում է դեմոկրատիան, ժողովրդի սոցիալիստական ինքնավարության ամբողջ համակարգի հետագա կատարելագործումն ու զարգացումը։*

*Այստեղ խնդիրները բազմազան են։ Այս իմաստով քիչ բան չի արվում։ Ի նկատի ունենք սովետների դերի հետագա բարձրացումը, արհմիությունների, կոմերիտմիության, ժողովրդական վերահսկողության, աշխատավորական կոլեկտիվների ակտիվացումը։ Բայց առջևում համառ աշխատանք կա թե՛ արդեն նախանշված և թե նոր ուղղություններով։*

*Սոցիալիստական դեմոկրատիայի խորացումը անխզելիորեն կապված է հասարակական գիտակցության բարձրացման հետ։ Դաստիարակչական աշխատանքի արդյունավետությունը նախ և առաջ դրսևորվում է նրանով, թե մարդիկ ինչպես են մասնակցում մեծ ու փոքր պրոբլեմների լուծմանը, թե նրանք ինչպես են աշխատում, ինչպես են պայքարում թերությունների դեմ։ Սովետական մարդկանց աշխատանքային և սոցիալական ակտիվության բարձրացումը, կարգապահության ամրապնդումը, հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի դաստիարակումը ամբողջ գաղափարախոսական գործունեության կարևոր խնդիրներն են։*

*Ընդ որում, այսուհետև էլ վճռական միջոցներ կձեռնարկվեն ամենուրեք կարգուկանոն հաստատելու համար, խորթ երևույթներից, հասարակության ու նրա քաղաքացիների շահերի նկատմամբ ամեն տեսակ ոտնձգություններից մեր կյանքը մաքրելու, սոցիալիստական օրինականությունը ամրապնդելու համար։*

*Մենք պարտավոր ենք այսուհետև էլ ընդլայնել հրապարակայնությունը կուսակցական, սովետական, պետական և հասարակական կազմակերպությունների աշխատանքում։ Վ. Ի. Լենինն ասում էր, որ պետությունն ուժեղ է մասսաների գիտակցականությամբ։ Մեր պրակտիկան ամբողջովին հաստատել է այդ հետևությունը։ Որքան լավ են իրազեկ մարդիկ, այնքան գիտակցաբար են գործում, այնքան ակտիվորեն են սատարում կուսակցությանը, պաշտպանում նրա պլաններն ու ծրագրային նպատակները։*

*Արտաքին քաղաքականության բնագավառում մեր կուրսը պարզ է ու հետևողական։ Դա խաղաղության և առաջադիմության կուրսն է։*

*Կուսակցության ու պետության առաջին պատվիրանն է պահպանել և բստ ամենայնի ամրապնդել եղբայրական բարեկամությունը մեր ամենամոտիկ*

վինակիցների ու դաշնակիցների՝ մեծ սոցիալիստական ընկերակցության երկրների հետ։ Մենք մեզանից կախված ամեն ինչ կանենք սոցիալիստական պետությունների հետ փոխգործակցությունն ընդլայնելու, համաշխարհային գործերում սոցիալիզմի դերն ու ազդեցությունը մեծացնելու համար։ Մենք կուզենայինք լրջորեն բարելավել հարաբերությունները Չինական Ժողովրդական Հանրապետության հետ և գտնում ենք, որ փոխադարձության առկայության դեպքում դա միանգամայն հնարավոր է։

Սովետական Միությունը պաշտպանել է գաղութային լծից ազատագրվելու ժողովուրդների պայքարը։ Եվ այսօր մեր համակրանքը Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի այն երկրների կողմն է, որոնք ընթանում են անկախության ամրապնդման և սոցիալական նորացման ուղիով։ Նրանք մեր բարեկամներն ու պարտնյորներն են կայուն խաղաղության, ժողովուրդների ավելի լավ, արդար հարաբերությունների համար մղվող պայքարում։

Իսկ ինչ վերաբերում է կապիտալիստական պետությունների հետ հարաբերություններին, ապա ուզում եմ ասել հետևյալը՝ մենք անշեղորեն կընթանանք խաղաղության և խաղաղ գոյակցության լենինյան քաղաքականության կուրսով։ Բարի կամքին Սովետական Միությունը միշտ կպատասխանի բարի կամքով, վստահությանը՝ վստահությամբ։ Բայց բոլորը պետք է իմանան, որ մեր հայրենիքի ու նրա դաշնակիցների շահերը մենք երբեք չենք զոհաբերի։

Մենք գնահատում ենք միջազգային լարվածության լիցքաթափման բնագավառում 70-ական թվականներին ձեռք բերված հաջողությունները և պատրաստ ենք մասնակցելու իրավահավասարության, փոխադարձ հարգանքի ու ներքին գործերին չմիջամտելու հիմունքներով պետությունների խաղաղ, փոխշահավետ համագործակցության հաստատման պրոցեսի շարունակմանը։ Այս ուղղությամբ նոր քայլեր կատարելով, կարելի կլիներ ըստ արժանվույն նշել հիտլերյան ֆաշիզմի և ճապոնական միլիտարիզմի դեմ նվաճված մեծ հաղթանակի 40-ամյակը։

Նախկինում երբեք մարդկության վրա այնքան ահավոր սպառնալիք չէր կախվել, ինչպես որ մեր օրերում։ Ստեղծված դրությունից դուրս գալու միակ խելամիտ ելքը դիմակայող ուժերի համաձայնությունն է սպառազինությունների, նախ և առաջ միջուկային սպառազինությունների մրցավազքը երկրագնդի վրա անհապաղ դադարեցնելու և տիեզերքում այն թույլ չտալու շուրջը։ Համաձայնություն՝ ազնիվ ու իրավահավասար հիման վրա, առանց մյուս կողմին «խորամանկելու» և իր պայմանները նրան թելադրելու փորձերի։ Համաձայնություն, որը բոլորին կօգնի առաջ շարժվելու դեպի բաղձալի նպատակը՝ միջուկային զենքի լիակատար ոչնչացումն ու մեկընդմիշտ արգելումը, միջուկային պատերազմի վտանգի լիակատար վերացումը։ Դրանում մենք հաստատապես համոզված ենք։

Վաղը Ժնևում բանակցություններ կսկսվեն Սովետական Միության և Ամերիկայի Միացյալ Նահանգների միջև։ Այդ բանակցությունների նկատմամբ ՍՍՀՄ-ի մոտեցումը քաջ հայտնի է։ Կարող եմ միայն կրկին հավաստել՝ մենք չենք ձգտում հասնել միակողմանի առավելությունների Միացյալ Նահանգների հանդեպ, ՆԱՏՕ-ի երկրների հանդեպ, ռազմական գերազանցության՝ նրանց նկատմամբ։ Մենք ցանկանում ենք սպառազինությունների մրցավազքի դադարեցում, այլ ոչ թե շարունակում։ Ուստի և առաջարկում ենք սառեցնել միջուկային զինանոցները, դադարեցնել հրթիռների հետագա ծավալումը. մենք ցանկանում ենք կուտակված սպառազինությունների իսկական և խոշոր կրճատում, այլ ոչ թե զենքի նորանոր համակարգերի ստեղծում՝ լինի դա տիեզերքում թե երկրագնդի վրա։

Կկամենայի, որ Ժնևի բանակցությունների մեր պարտնյորները հասկանային Սովետական Միության դիրքորոշումը և պատասխանեին փոխադարձությամբ։ Այդ դեպքում համաձայնությունը հնարավոր կդառնար։ Աշխարհի ժողովուրդները թեթևացած շունչ կքաշեին։



ՍՄԿԿ-ն իր բնույթով ինտերնացիոնալ կուսակցություն է։ Արտասահմանի մեր համախոհները կարող են վստահ լինել. խաղաղության ու սոցիալական առաջադիմության պայքարում Լենինի կուսակցությունը, ինչպես միշտ, սերտորեն կհամագործակցի եղբայրական կոմունիստական, բանվորական, հեղափոխական-դեմոկրատական կուսակցությունների հետ, հանդես կգա բոլոր հեղափոխական ուժերի միասնության և ակտիվ փոխգործողության օգտին։

Ընկերնե՛ր, մեր առջև կանգնած բարդ խնդիրների լուծումը ենթադրում է կուսակցության հետագա ամրապնդում, նրա կազմակերպող և ուղղություն տվող դերի բարձրացում։ ՍՄԿԿ-ն միշտ էլ եղել է և ելնում է լենինյան այն մտքից, որ սկզբունքային քաղաքականությունը միակ ճիշտ քաղաքականությունն է։ Այդ քաղաքականությունը, որը մշակվում է կոլեկտիվ կերպով, կիրականացվի հետևողականորեն ու անշեղորեն։ Կուսակցությունը հենց այն ուժն է, որն ի վիճակի է հաշվի առնել երկրի բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի, բոլոր ազգերի ու ազգությունների շահերը, նրանց ի մի համախմբել, ժողովրդի եռանդը մոբիլիզացնել կոմունիստական արարման ընդհանուր գործի համար։

Կուսակցության քաղաքականությունը նպատակամղված է եղել և կլինի բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և մտավորականության դաշինքի ամրապնդմանը, մեր մեծ բազմազգ տերության ժողովուրդների բարեկամության անշեղ ամրապնդմանը։

ՍՄԿԿ-ն ըստ ամենայնի կզարգացնի երիտասարդության ստեղծագործական ձեռներեցությունը, կհոգա կանանց աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման, պատերազմի և աշխատանքի վետերանների կարիքների ու պահանջմունքների մասին։

Միջազգային բարդ իրադրության մեջ, ավելի քան երբևէ, կարևոր է մեր հայրենիքի պաշտպանունակությունը պահպանել այնպիսի մակարդակի վրա, որ պոտենցիալ ագրեսորները լավ իմանան՝ սովետական երկրի և նրա դաշնակիցների անվտանգության, սովետական մարդկանց խաղաղ կյանքի նկատմամբ ոտնձգությունը կհանդիպի խորտակիչ պատասխան հարվածի։ Մեր պանծալի զինված ուժերը այսուհետև էլ անհրաժեշտ ամեն ինչ կանեն դրա համար։

Ներկայումս լայնորեն ծավալվել է ՍՄԿԿ XXVII համագումարի նախապատրաստությունը։ Համագումարում քննության կառնվի կուսակցության ծրագրի նոր խմբագրույթը, կսահմանվեն երկրի զարգացման հեռանկարները հաջորդ հնգամյակում և մինչև 2000 թվականը։

Ժամանակը պահանջում է վերից վար կուսակցական բոլոր կազմակերպությունների լարված, ստեղծագործական աշխատանք։ Բոլոր տեղամասերում, ամենուրեք և ամենուր կոմունիստները պետք է քաղաքացիական պարտքի, հասարակության բարօրության օգտին բարեխիղճ աշխատանքի կատարման օրինակ ծառայեն, ամենուրեք հաստատեն աշխատանքի լենինյան ոճը։ Դա նախ և առաջ վերաբերում է կուսակցության կադրերին, կուսակցական ու պետական ղեկավարներին։ ՍՄԿԿ-ն անշեղորեն կվարի պահանջկոտությունն ուժեղացնելու, հանձնարարված գործի համար պատասխանատվությունը բարձրացնելու գիծը։

Պլենումն ավարտվելուց հետո Կենտրոնական կոմիտեի անդամները, մարզկոմների առաջին քարտուղարները, պլենումի բոլոր մասնակիցները կվերադառնան տեղերը, որպեսզի նոր եռանդով ձեռնամուխ լինեն գործերի։ Իսկ անելիքներ շատ կան։ Նախ և առաջ հարկավոր է հաջողությամբ ավարտել ընթացիկ տարվա տնտեսական ու սոցիալական զարգացման պլանների կատարման աշխատանքը և դրանով իսկ ապահովել հաջորդ հնգամյակի վստահ մեկնարկը։

Սաստիկ ձմեռը փոքր-ինչ արգելակեց պլանային առաջադրանքների իրականացումը մի շարք ճյուղերում։ Ուրեմն հիմա հարկավոր է պատրաստվել, մոբիլիզացնել ռեզերվները, լարել բոլոր ուժերը՝ թերին լրացնելու և մինչև տարեվերջ հասնելու նախատեսված բնագծերին։

Ընկերնե՛ր, այս օրերին մենք կրկին սրությամբ ենք զգում, թե ինչքան հզոր ու միաձույլ են կոմունիստների շարքերը, ինչքան համախմբված ու միասնական է մեր սովետական ժողովուրդը։ Վերջերս կայացած ընտրություններում սովետական մարդիկ կրկին միահամուռ պաշտպանեցին մեր կուսակցության ու պետության կուրսը։ Այդ պաշտպանությունը ոգեշնչում է ու պարտավորեցնում։

Այսօր, Կենտրոնական կոմիտեի պլենումը ինձ վրա դրեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի բարդ ու մեծ պարտականությունը։ Լավ եմ հասկանում, թե ինչքան մեծ է ինձ ցույց տրված վստահությունը և ինչքան մեծ է դրա հետ կապված պատասխանատվությունը։ Առաջիկա աշխատանքում հույս ունեմ վայելելու Կենտկոմի քաղբյուրոյի անդամների, քաղբյուրոյի անդամության թեկնածուների և քարտուղարների, ամբողջությամբ վերցված՝ կուսակցության Կենտրոնական կոմիտեի աջակցությունն ու ակտիվ օգնությունը։ Ձեր բազմակողմանի փորձը մեր ժողովրդի պատմական փորձի խտացումն է։ Ձեզ խոստանում եմ, ընկերնե՛ր, բոլոր ուժերս գործադրել հավատարմորեն ծառայելու մեր կուսակցությանը, մեր ժողովրդին, Լենինի մեծ գործին։

Թույլ տվեք վստահություն հայտնել, որ, ընդառաջ գնալով ՍՄԿԿ XXVII համագումարին, Կենտրոնական կոմիտեի շուրջը համախմբված ժողովուրդն ու կուսակցությունը ամեն ինչ կանեն, որպեսզի է՛լ ավելի հարստանա ու հզորանա մեր սովետական հայրենիքը, որպեսզի է՛լ ավելի լրիվ բացահայտվեն սոցիալիզմի ստեղծարար ուժերը։

---



ԿՈՆՍՏԱՆՏԻՆ ՈՒՍՏԻՆՈՎԻՉ ՉԵՌՆԵՆԿՈ

# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ, ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻ

# ԴԻՄՈՒՄԸ

## ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆԸ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻՆ

*Թանկագին ընկերնե՛ր։*

*Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, սովետական պետությունը, ամբողջ սովետական ժողովուրդը ծանր կորուստ կրեցին։ Կյանքից հեռացավ Կոնստանտին Ուստինովիչ Չեռնենկոն՝ կուսակցական ու պետական ականավոր գործիչը, հայրենասերն ու ինտերնացիոնալիստը, կոմունիզմի իդեալների հաղթանակի, աշխարհի խաղաղության հետևողական մարտիկը։*

*Կոնստանտին Ուստինովիչ Չեռնենկոյի բովանդակ կյանքը մինչև վերջ նվիրաբերվեց լենինյան կուսակցության գործին, սովետական ժողովրդի շահերին։ Կուսակցությունը որտեղ էլ նրան ուղարկում էր, նա միշտ, իրեն հատուկ անձնվիրությամբ, պայքարում էր ՍՄԿԿ-ի քաղաքականության կենսագործման համար, որի շարքերում նա եղավ ավելի քան հիսուն տարի։*

*Կոմերիտական ղեկավարից ու սահմանապահ ուղեկալի կուսկազմակերպչից մինչև ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար և ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ՝ այսպիսին է Կ. Ու. Չեռնենկոյի կյանքի ուղին։ Կուսակցության ու պետության բարձրագույն պոստերում ամբողջ լիակատարությամբ բացահայտվեց կազմակերպչի, լենինյան տիպի ղեկավարի նրա տաղանդը։ Կուսակցության Կենտրոնական կոմիտեն, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն Կ. Ու. Չեռնենկոյի գլխավորությամբ մեծ ու բեղմնավոր աշխատանք են կատարել ՍՄԿԿ XXVI համագումարի, Կենտրոնական կոմիտեի հետհամագումարյան պլենումների որոշումների կենսագործմանը աշխատավորներին մոբիլիզացնելու համար։*

*Հետևողականորեն վարվել է զարգացած սոցիալիզմի կատարելագործման, տնտեսական ու սոցիալական զարգացման խոշոր խնդիրների լուծման, սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման, մասսաների ստեղծագործական ակտիվության հետագա ծավալման, գաղափարախոսական աշխատանքի բարելավման կուրսը։ Կուսակցության ուշադրության կենտրոնում մըշտապես գտնվել են կարգապահության, օրինականության և կարգուկանոնի ամրապնդման, կադրային քաղաքականության, սովետների, կոմերիտմիության գործունեության ակտիվացման, ժողովրդական վերահսկողության, դպրոցական ռեֆորմի հարցերը, գրականության ու արվեստի հասարակական դերի բարձրացման հարցերը։ Ակտիվ աշխատանք է կատարվում ՍՄԿԿ-ի հերթական XXVII համագումարի նախապատրաստման, կուսակցության ծրագրի նոր խմբագրույթի մշակման ուղղությամբ։*

*Միջազգային ասպարեզում կուսակցության ջանքերը կենտրոնացվել են սոցիալիզմի եղբայրական երկրների հետ բազմակողմանի համագործակցության հետագա զարգացման վրա։ Կ. Ու. Չեռնենկոյի գործունեության հետ են կապված անցումը սոցիալիստական տնտեսական ինտեգրացման նոր փուլին, սոցիալիստական ընկերակցության դիրքերի ամրապնդումը։*

*ՍՄԿԿ Կենտկոմը, սովետական պետությունը անսասանորեն ու հետևողականորեն կենսագործել են տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքը, վճռականորեն հակազդել են իմպերիալիզմի առավել հետադեմ շրջանների ագրեսիվ դիտավորություններին ու նկրտումներին, անշեղորեն պայքարել են իմպերիալիզմի պարտադրած սպառազինությունների մրցավազքը դադարեցնելու, միջուկային պատերազմի սպառնալիքը վերացնելու, ժողովուրդների հուսալի անվտանգությունն ապահովելու համար։*

*Ծանր կորստյան առթիվ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը դիմում են կոմունիստներին, սովետական ժողովրդին, կոչ անելով է՛լ ավելի սերտորեն համախմբվել կուսակցության լենինյան Կենտրոնական կոմիտեի ու նրա քաղբյուրոյի շուրջը։ Մեր երկրի աշխատավորները, հանձին Սովետական Միության կոմունիստական կուսակցության, լիակատար հիմունքով տեսնում են սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժին։ Կուսակցության բոլոր գործերն ու խոհերը նպատակամղված են սովետական ժողովրդի արմատական շահերին, կոմունիզմի գործին անձնվիրաբար ծառայելուն։*

*ՍՄԿԿ-ն զինված է հեղափոխական-մարքսիստական անմահ ուսմունքով։ Նա անշեղորեն ընթանում է Լենինի նշած ուղիով և երբեք չի շեղվի այդ ուղուց։*

*Կուսակցությունը այսուհետև էլ կվարի զարգացած սոցիալիզմի համակողմանի կատարելագործման կուրսը։ Նա իր գործունեության բարձրագույն իմաստը համարում է ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի հետագա բարձրացումը էկոնոմիկայի ինտենսիվացման, գիտատեխնիկական առաջադիմության համակողմանի արագացման հիման վրա։ Միևնույն հաստատակամությամբ մեր կյանքի բոլոր ոլորտներում ավելի ու ավելի լրիվ չափով կկենսագործվի սոցիալական արդարության՝ սոցիալիզմին հատուկ սկզբունքը, անդուլ կերպով կշարունակվի կարգապահության, կարգուկանոնի, կազմակերպվածության ամրապնդման՝ երկրի աշխատավորների հավանությանն ու պաշտպանությանն արժանացած կուրսը։ Կուսակցությունը այսուհետև էլ կամրապնդի բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության ու մտավորականության դաշինքը, սովետական ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, որոնք մեր հասարակության կենսագործունեության հիմքն են, կզարգացնի սոցիալիստական դեմոկրատիան։ Կուսակցությունը սովետական մարդկանց բարձրագույն հոգևոր արժեքները համարել է և համարում է մարքս-լենինյան համոզվածությունը, կոլեկտիվիզմը, հայրենասիրությունը, պրոլետարական սոցիալիստական ինտերնացիոնալիզմը։*

*ՍՄԿԿ-ն, սովետական պետությունը հնարավոր և անհրաժեշտ ամեն ինչ արել են և անում են սոցիալիստական ընկերակցությունը, համաշխարհային ասպարեզում սոցիալիզմի դիրքերը ամրապնդելու, միջուկային աղետը կանխելու և կայուն խաղաղություն ապահովելու համար։ Մենք ուզում ենք և հաստատակամորեն ձգտում ենք սպառազինությունների մրցավազքի դադարեցմանը, տիեզերքի ռազմականացման կանխմանը։*

*Մեր վերջնական նպատակն են մոլորակի վրա ամենուրեք միջուկային զենքի լիակատար ոչնչացումը, միջուկային պատերազմի սպառնալիքի խսպառ վերացումը։ Սովետական Միությունը միշտ էլ հանդես է եկել և հանդես է գալիս հիմնակազմ երկխոսության օգտին, միջազգային լարվածության նվա-*

*ղեցման նպատակին, բոլոր ժողովուրդների ու պետությունների միջև վստա- հության, համագործակցության ու փոխըմբռնման մթնոլորտի հաստատման նպատակին ուղղված գործնական միջոցառումների օգտին։ Սովետական Միությունը ոչ ոքի չի սպառնում և ռազմական գերազան- ցության չի ձգտում։ Բայց նա նաև թույլ չի տա, որ որևէ ուրիշ երկիր կամ պետությունների կոալիցիա այդպիսի գերազանցություն ստանա։ Ահա թե ինչու մենք այսուհետև էլ անդուլ կերպով կբարձրացնենք զգոնությունը, կամ- րապնդենք մեր սոցիալիստական հայրենիքի պաշտպանունակությունը։*

*Մեր համակրանքը և մեր պաշտպանությունը այն ժողովուրդների կողմն են, որոնք պայքարում են հանուն ազատության և ազգային անկախության։ խաղաղության ու սոցիալական առաջադիմության համար մղվող պայքարում ՍՄԿԿ-ն անշեղորեն հավատարիմ է միջազգային կոմունիստական ու բանվո- րական շարժման ուժերն ըստ ամենայնի համախմբելու հետևողական կուրսին։ Կուսակցության նպատակները պարզ են և ազնիվ։ Դրանց շնորհիվ ՍՄԿԿ-ն վաստակել է աշխատավորների անսահման վստահությունը։ Ժողո- վրդի հետ միասնությունը կուսակցության ուժն է։ Կուսակցության հետ միաս- նությունը, նրա ղեկավարումը ժողովրդի ուժն են։*

*Կոնստանտին Ուստինովիչ Չեռնենկոն, որն իր բովանդակ կյանքը նվի- րաբերեց կուսակցությանը, սովետական ժողովրդին հավատարմորեն ծառա- յելուն, ընդմիշտ կմնա կոմունիստների, բոլոր սովետական մարդկանց հիշո- ղության մեջ։ Նա մեր հիշողության մեջ կմնա որպես մարքս-լենինյան գա- ղափարների կրքոտ պրոպագանդիստ, կարեկից ու խստապահանջ ղեկավար, աշխատավոր մարդկանց կարիքների ու հոգսերի նկատմամբ զգայուն և ուշա- դիր մարդ։*

*ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահու- թյունը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը հաստատ հավատացած են, որ կո- մունիստները, բոլոր սովետական մարդիկ, ցուցաբերելով բարձր գիտակցա- կանություն և կազմակերպվածություն, կաշխատեն է՛լ ավելի մեծ խանդա- վառությամբ ու անձնվիրությամբ, կամրապնդեն մեր հայրենիքի տնտեսա- կան ու պաշտպանական հզորությունը, արժանավայել կկրեն մեծ Հոկտեմբե- րի դրոշը։*

---



# ՀԱՍՈՒՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԸ ՈՐՊԵՍ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՖՈՐՄԱՑԻԱՅԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՕՐԻՆԱՉԱՓ ՓՈՒԼ

**Ց. ՍՏԵՓԱՆՅԱՆ**
ՍՍՀՄ ԳԱ թղթակից անդամ

## 1. ՍՄԿԿ ԳԼԽԱՎՈՐ ՍՏՐԱՏԵԳԻԱԿԱՆ ԽՆԴԻՐԸ

*ՍՄԿԿ-ն դեպի իր հերթական XXVII համագումարն է ընթանում իր գլ- խավոր ստրատեգիական խնդրի՝ զարգացած սոցիալիզմի կատարելագործման, որպես կոմունիզմին հետագա անցման անհրաժեշտ պայմանի, ռեալիստական ըմբռնմամբ զինված։*

*Այդ գլխավոր ռեալիստական խնդիրը մշակվել է կուսակցության վերջին համագումարների և ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների նյութերում։ Այդ նյութերը հանգամանորեն զարգացվեցին Կ. Ու. Չեռնենկոյի* Զարգացած սոցիալիզմի պահանջների մակարդակին: ՍՄԿԿ տեսության, ստրատեգիայի և տակտիկայի մի քանի հրատապ պրոբլեմներ *աշխատության մեջ։ Այն նոր հասարակարգի յուրաքանչյուր ակտիվ կառուցողի, ամենից առաջ յուրաքանչյուր կոմունիստի կողմնորոշում է գործուն մասնակցություն ունենալու կուսակցության գլխա- վոր ստրատեգիական խնդրի իրականացմանը։ «Մեր ողջ նախորդ զարգացման արդյունքով,— նշված է հիշյալ աշխատությունում,— ՍՄԿԿ XXVI համագու- մարի, Կենտկոմի հետագա պլենումների որոշումների իրականացման ապա- րեզում կուսակցության և ժողովրդի ստեղծարար հսկայական աշխատանքի ընթացքում մենք հասել ենք այնպիսի բնագծերի, երբ կարող ենք և պետք է* առաջ ընթանանք, կողմնորոշվելով դեպի սոցիալիզմի վերաբերյալ գիտական տեսության մշակած առավել բարձր, ամենախստապահանջ պատկերացում- ները։ *Սա է մեր հասարակության կյանքի բոլոր ոլորտներում հասունացած որակական խոր վերափոխումների էությունը»։*

*ՍՄԿԿ XXVII համագումարի նախապատրաստման պրոցեսում սովետա- կան հասարակագետները, ողջ կուսակցության հետ միասին, նույնպես կոչ- ված են ուժերի ներածին չափ մասնակցելու ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մշակմանը։ Դա պետք է արտացոլվի այն պրոբլեմային հոդվածների ու գրքերի նախապատրաստման մեջ, որոնք նվիրված են լինելու զարգացած սոցիալիզ- մի՝ որպես կոմունիստական ֆորմացիայի ձևավորման պատմականորեն տե- վական փուլի, կատարելագործման զանազան ասպեկտներին։*

*Կոմունիստական հասարակական-տնտեսական ֆորմացիայի մասին ուս- մունքը առաջադեմ մարդկության մեծագույն նվաճումն է, աշխարհում իրոք արդարացի հասարակության լիակատար հաղթանակի համար մղվող պայքարի տեսական հաստատուն հիմքը։*

Այդ ուսմունքը, որ Մարքսը և Էնգելսը առաջին անգամ ստեղծեցին XIX դարի կեսերին, հետագայում տեսականորեն զարգացվեց Լենինի աշխատություններում, ՍՄԿԿ և եղբայրական մյուս կուսակցությունների կոլեկտիվ մտքի մեջ: Կոմունիստական ֆորմացիայի ձևավորման դիալեկտիկայի զարգացման գործում նոր խոսք է հասուն սոցիալիզմի կոնցեպցիան: «ՍՄԿԿ-ի կոլեկտիվ միտքը գիտական կոմունիզմը հարստացրեց զարգացած սոցիալիզմի մասին ուսմունքով,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշման մեջ: Կուսակցությունը սահմանեց, որ սովետական հասարակությունը գտնվում է պատմականորեն տևական այդ փուլի սկզբում, բացահայտեց դրա զարգացման ռեալ դինամիկան»: Այդ դինամիկայի իմացությունը անմիջականորեն առնչվում է ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մշակման հետ:

Ինչպես հայտնի է, ՍՄԿԿ XXVI համագումարում և Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումում շեշտվեց, որ մեր կուսակցության ներկայումս գործող երրորդ ծրագիրն ընդհանուր առմամբ ճիշտ է լուսաբանում համաշխարհային հասարակական զարգացման օրինաչափությունները և գիտականորեն հիմնավորում կոմունիզմի հաղթանակի համար սովետական ժողովրդի մղած պայքարը: Միաժամանակ մատնանշվեց, որ նրա որոշ դրույթներում «կային իրողությունից կտրվածության, ժամանակից առաջ վազելու, չարդարացված մանրամասնացման տարրեր»: Զերծազատվելով դրանից, ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունն իր բովանդակության մեջ կարտացոլի զարգացած սոցիալիզմի կատարելագործման մեծ ու բարդ խնդիրները: «Իմաստավորել այս խնդիրներն իրենց կոմպլեքսի մեջ,— նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. փետրվարյան պլենումում,— սահմանել դրանց լուծման երկարաժամկետ հստակ ստրատեգիան, ցույց տալ մեր ընթացիկ գործերի կապը կոմունիստական հեռանկարի հետ՝ ահա թե մեզ ինչ պետք է տա կուսակցական ծրագրի նոր խմբագրությունը»: Զարգացնելով այս դրույթները՝ կուսակցության Կենտրոնական կոմիտեի 1984 թ. ապրիլյան պլենումում նշվեց. «Այդ աշխատանքի հիմնական ուղղությունները սահմանել է ՍՄԿԿ XXVI համագումարը: Դրանք զարգացրել և կոնկրետացրել են Կենտկոմի ետհամագումարյան պլենումները: Խոսքը վերաբերում է դեպի կոմունիզմ մեր առաջընթացի այնպիսի ստրատեգիային, որն ընդհանուր ոչինչ չունի ոչ գործողություններում դանդաղաշարժության հետ, ոչ էլ զարգացման պատմականորեն անհրաժեշտ աստիճանների վրայով ցատկելու հետ: Խոսքն այն մասին է, որ դեպի կուսակցության բարձրագույն նպատակները տանող ճանապարհին մենք դեռ պետք է լուծենք իրենց ծագումով և բնույթով կոմունիստական ֆորմացիայի առաջին փուլին վերաբերող բազմաթիվ խոշոր ու բարդ խնդիրներ: Իսկն ասած՝ այսօր հենց սա է զարգացած սոցիալիզմի կատարելագործման մեծ ու լարված աշխատանքի գլխավոր բովանդակությունը»: Այս մտքերը զարգացնելով գիտական մեթոդաբանության ոգով, որը Լենինը սահմանել է որպես «մարքսիստական ռեալիզմի հեղափոխական դիալեկտիկա», Կ. Ու. Չեռնենկոն ՍՍՀՄ գրողների միության վարչության հոբելյանական պլենումում այն միտքը զարգացրեց, թե պետք է ելնել ստեղծված իրողություններից, հաշվի առնելով այն ամեն էականորեն նորը, ինչ հասարակական պրակտիկայում ու տեսության մեջ երևացել է վերջին համարյա քառորդ դարի ընթացքում, հաշվի առնելով մասսաների կուտակած փորձը: Իսկ այդ փորձը ցույց է տվել, որ նախքան անմիջականորեն կոմունիզմի կառուցման հետ կապված խնդիրների լուծումը անհրաժեշտ է անցնել զարգացած սոցիալիզմի պատմականորեն տևական փուլը, որի սկզբին գտնվում է մեր երկիրը:

Այդ սկզբունքային դրույթների դիրքերից անդրադառնանք զարգացած սոցիալիզմի կոնցեպցիայի մշակման պրոցեսի դիալեկտիկային: Դիալեկտիկայի կարևորագույն պահանջն է պատմական մոտեցումը հասարակական երևույթների իմացության պրոցեսին: Դրա վրա բազմիցս ուշադրություն էր հրավիրում Լենինը, մատնանշելով, որ հասարակական երևույթների իմացության գործում անհրաժեշտ է «չմոռանալ հիմնական պատմական կապը, յուրաքանչյուր հարցին նայել այն տեսակետից, թե տվյալ որոշակի երևույթը պատմության մեջ ինչպես է ծագել, իր զարգացման ընթացքում ինչպիսի գլխավոր փուլեր է անցել այդ երևույթը, և դրա զարգացման տեսակետից նայել, թե տվյալ բանն ինչ է դարձել այժմ» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 39, էջ 83): Այդպիսի մոտեցումը բացառում է ամեն մի սուբյեկտիվիզմ, նպաստում է լենինյան այն պատգամի կատարմանը, որ հարկավոր է «սովորել տարբերել սուբյեկտիվը օբյեկտիվից» (ԵԼԺ, հ. 31, էջ 222): Լենինյան այդ մեթոդաբանական սկզբունքի պահպանումը ապահովում է հաջորդայնությունը կոմունիստական արարման գաղափարախոսության և քաղաքականության մեջ: Հաջորդայնությունը ոչ թե վերացական հասկացություն է, այլ կենդանի, ռեալ գործ, նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. փետրվարյան պլենումում: Եվ նրա էությունը ամենից առաջ այն է, որ առանց կանգ առնելու ընթանանք առաջ, ընթանանք՝ հենվելով նախկինում ամբողջ ձեռք բերվածի վրա, ստեղծագործաբար հարստացնելով ձեռք բերվածը, կոմունիստների, բանվոր դասակարգի, ողջ ժողովրդի կոլեկտիվ միտքը, եռանդը կենտրոնացնելով չլուծված խնդիրների, ներկայի և ապագայի հանգուցային պրոբլեմների վրա:

## 2. ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԿՈՆՑԵՊՑԻԱՅԻ ՄՇԱԿՄԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Ապագա կոմունիստական հասարակարգի զարգացման երկու գլխավոր փուլերի մասին ուսմունքն ստեղծելուց հետո Էնգելսը Կ. Շմիդտին հղած նամակում 1891 թվականի հուլիսին գրում էր, որ դեպի կոմունիզմ անցման փուլերի պրոբլեմը «ամենադժվարին հարցն է բոլոր այն հարցերից, որոնք միայն գոյություն ունեն» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 38, стр. 108): Հին հասարակությունը գործնականորեն նորի վերափոխվելուց առաջ առանձնապես դժվար էր լուծել այդ հարցը, քանի որ չկար փորձ, չկար պատմական նյութ: Ուստի Մարքսը և Էնգելսը դեմ էին ապագա կոմունիստական հասարակարգի զարգացման կոնկրետ ձևերը կանխագուշակելու ուտոպիական փորձերին: Բայց դրա հետ մեկտեղ Էնգելսը նույն այդ նամակում անհրաժեշտ համարեց շեշտել, որ «դեպի կոմունիստական հասարակարգ տանող անցման փուլերն արժեն այն բանին, որ լավ խորհենք դրանց մասին» (նույն տեղը):

Այդ պրոբլեմին երկար ու հիմնավորապես առաջին անգամ անդրադարձել է Լենինը՝ Հոկտեմբերյան մեծ հեղափոխությամբ սկսված սոցիալիստական վերափոխումներից անմիջապես հետո: 1918 թվականից ի վեր Սովետական իշխանության հերթական խնդիրները աշխատությունում Լենինը արդեն կանխատեսել էր «զարգացած սոցիալիստական հասարակարգի» կառուցման ժամանակաշրջանը (ԵԼԺ, հ 36, էջ 172): Այնուհետև Լենինը բազմիցս, որպես համարժեքներ, օգտագործել է «պատրաստի ձևերին հասած սոցիալիզմ», «ավարտուն սոցիալիզմ», «լիակատար սոցիալիստական հասարակություն», «ամբողջական սոցիալիզմ» հասկացությունները: Բայց Լենինը, որպես մեծագույն դիալեկտիկ, գիտեր, որ չի կարելի միանգամից կառուցել «լիակատար սոցիալիստական հասարակություն», ուստի նա նոր ֆորմացիայի անցման աստիճաններին էր վերագրում այնպիսի հասկացություններ, ինչպես «սոցիալիստական էկոնոմիկայի հիմքի կառուցումը», «սոցիալիստական հասարակարգի հիմքի կառուցումը» և այլն: Լենինյան շատ դրույթներ հաշվի էին առնվել ՀամԿ(բ)Կ XVIII համագումարի նյութերում՝ 1939 թվականի մարտին:

Համագումարը սահմանեց, որ ՍՍՀՄ-ում «հիմնականում իրականացվել է կոմունիզմի առաջին փուլը՝ սոցիալիզմը», և այդ կապակցությամբ մեր երկիրը թևակոխել է «անդասակարգ սոցիալիստական հասարակարգի կառուցումն ավարտելու և սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու շրջանը»:

Հայրենական պատերազմից և ժողովրդական տնտեսության վերականգնումից հետո ՍՍՀՄ-ում ճշգրտվում և կոնկրետացվում էին անդասակարգ սոցիալիստական հասարակարգի կառուցումն ավարտելու և աստիճանաբար կոմունիզմին անցնելու խնդիրները։ ՍՍՀՄ-ից հետո սոցիալիզմի նոր երկրները ևս սկսեցին կանխանշել սոցիալիստական շինարարության համապատասխան պլաններ։

Հաշվի առնելով զանազան երկրներում սոցիալիզմի կառուցման փորձի դրական և բացասական հանգամանքները, ստեղծագործական քննարկման և մտքերի փոխանակման կարգով ճշգրտվում և հարստացվում էին առանձին դրույթներ ու բանաձևեր։ Զարգացած սոցիալիզմի կոնցեպցիան մշակելիս հարկ եղավ հաղթահարել երկու միակողմանի տեսակետներ։ Այսպես, կարծիք էր հայտնվում, որ սոցիալիզմը առանձին հասարակական-տնտեսական ֆորմացիա է՝ արտադրության իր եղանակով և զարգացման օրինաչափություններով։ Նման մոտեցման իրականացումը պրակտիկայում արհեստականորեն կասեցնում էր կոմունիստական նոր տարրերի զարգացումը սոցիալիստական շինարարության ընթացքում։ Այդ դրույթը հիմնավորվում էր, օրինակ, 60-ական թվականներին ԳԴՀ-ում հրատարակված «Սոցիալիզմի քաղաքատնտեսություն» գրքի էջերում։ Այդ տեսակետին էին նաև սովետական մի քանի տնտեսագետներ, որոնք պնդում էին, թե արտադրության սոցիալիստական եղանակն սկզբունքորեն տարբերվում է կոմունիստականից։

Հակառակ տեսակետի կողմնակիցներն այն կարծիքն էին հայտնում, որ սոցիալիզմը մի կարճատև փուլ է կոմունիստական ֆորմացիայի ձևավորման պրոցեսում։ Համապատասխանաբար, հիմնականում սոցիալիզմի կառուցմամբ ծավալուն շարժում է սկսվում դեպի կոմունիզմի բարձրագույն փուլը։ Մասնավորապես, հետևություն էր արվում, որ արդեն 80-ական թվականներին մեր երկրում հիմնականում կկառուցվի կոմունիզմ։ Նման մոտեցումը ակնհայտ առաջ վազել էր։

ՍՄԿԿ-ն մյուս եղբայրական կուսակցությունների հետ համատեղ հաղթահարեց վերը նշված սխալ պնդումները և մշակեց զարգացած սոցիալիզմի՝ որպես կոմունիստական ֆորմացիայի առաջին փուլի ձևավորման ու կատարելագործման պրոցեսի պատմականորեն տևական փուլի կոնցեպցիան։ Զարգացած սոցիալիզմի կառուցման ժամանակաշրջանն սկսվելու մասին լենինյան դրույթը առաջին անգամ առաջ քաշվեց 1960 թվականին՝ կոմունիստական և բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների խորհրդակցությունում։ Այդ կոնցեպցիան իր արտացոլումը գտավ ՍՄԿԿ XXIV, XXV և XXVI համագումարների և սոցիալիստական ընկերակցության երկրների եղբայրական կուսակցությունների համագումարների որոշումներում։ Այդ կոնցեպցիան հարստացվեց և կոնկրետացվեց ՍՄԿԿ Կենտկոմի հետագա պլենումներում և մեր կուսակցության ղեկավարների ծրագրային ելույթներում։

Գլխավորը, որ նշվել էր կուսակցական այդ փաստաթղթերում, սովետական հասարակության զարգացման մեջ պատմականորեն ձեռք բերված ժամանակաշրջանի իրատեսական ու ստեղծագործական գնահատականն էր։ Ռեալ իրականության ճիշտ արտացոլումը՝ զարգացման նրա հակասական բնույթով, ձեռք բերված հաջողությունների և չլուծված խնդիրների ռեալիստական գնահատականը միշտ էլ բնորոշ են եղել մեր կուսակցության համար։

Զարգացած սոցիալիզմի՝ կոլեկտիվ կերպով մշակված կոնցեպցիայից հետո մեր երկրում և սոցիալիստական ընկերակցության մյուս երկրներում լույս են տեսել մեծ քանակությամբ գրքեր ու հոդվածներ, որտեղ առկա են ճիշտ գաղափարներ և դրույթներ։ Կան նաև ոչ քիչ վիճելի ու ճշգրտման կարոտ պրոբլեմներ։

### 3. ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ՝ ՈՐՊԵՍ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՖՈՐՄԱՑԻԱՅԻ ՁԵՎԱՎՈՐՄԱՆ ԱՆՀՐԱԺԵՇՏ ՈՒ ՏԵՎԱԿԱՆ ՓՈՒԼԻ ԷՈՒԹՅՈՒՆԸ

Զարգացած սոցիալիզմը հասարակության՝ մի ֆորմացիայից դեպի մյուս, ավելի բարձր ֆորմացիա, վերընթաց շարժման ընդհանուր սոցիոլոգիական



օրինաչափության որակապես նոր դրսևորումն է։ Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, որ թեև բոլոր ֆորմացիաների միջև ընդհանուր շատ բան կա, բայց կա նաև էական տարբերություն, հատկապես դասակարգային ֆորմացիաների և անդասակարգ կոմունիստական ֆորմացիայի միջև։

Բոլոր ֆորմացիաների առաջին ընդհանուր հատկանիշը նրանց՝ որպես սոցիալական օրգանիզմի, որոշակի ամբողջականությունն է։ Մարքսիզմ-լենինիզմի դասականները աՀա թե ինչպես են արտահայտել սոցիալական այդ ամբողջականությունը։ «Տնտեսական ֆորմացիայի զարգացմանը,— գրում է Մարքսը,— ես նայում եմ որպես բնապատմական պրոցեսի»... (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 23, стр. 10)։

Շեշտելով և կոնկրետացնելով մեթոդաբանական այդ կարևոր միտքը, Լենինը նշում էր, որ ֆորմացիան «ըստ Մարքսի տեսության, սոցիալական մի հատուկ օրգանիզմ է, որն ունի իր ծագման, գործառնության և ավելի բարձր ձևի անցնելու, սոցիալական այլ օրգանիզմի փոխակերպվելու հատուկ օրենքները» (ԵԺԼ, հ. 1, էջ 251)։

Կոմունիստական ֆորմացիայի ձևավորման պրոցեսում ևս սկսվում է մի այնպիսի ընթացաշրջան, երբ գոյանում է նոր որակ՝ որպես ամբողջական սոցիալական օրգանիզմ, որն արտացոլում է նոր հասարակության էությունը։ Այդպիսի սոցիալական ամբողջության սկզբնական ձևը զարգացած սոցիալիզմի փուլն է։ Զարգացած սոցիալիզմի կատարելագործման համեմատ առավել լիովին կբացահայտվի կոմունիստական ֆորմացիայի՝ որպես սոցիալական օրգանիզմի բարձրագույն տիպի, ամբողջական բնույթը՝ նրա պատմական բոլոր առավելություններով։

Ընդհանուրի և առանձնահատուկի դիալեկտիկան հնարավորություն է ընձեռում մեթոդաբանորեն ճիշտ հասկանալու հասուն սոցիալիզմի սկզբնական փուլը և զարգացման հեռանկարները, որը բնորոշվում է ժողովրդական զանգվածների ու անհատի գործունեության կոլեկտիվիստական սկզբունքների հիման վրա հասարակական կյանքի բոլոր կողմերի կոմպլեքսային զարգացմամբ։

Իսկ ավելի կոնկրետ ինչո՞ւմ է արտահայտվում սոցիալական օրգանիզմի սոցիալիստական ամբողջականության որակական տարբերությունը կապիտալիստականից։

**Առաջին**, կապիտալիզմի օրոք սոցիալական օրգանիզմի ամբողջականությունը հիմնված է թշնամական դասակարգերի ու ազգերի, նրանց արմատական շահերի անհաշտելի հակամարտության վրա։ Մարքսը, հետազոտելով մինչսոցիալիստական հարաբերությունները, նշում էր, որ բոլոր դասակարգային ֆորմացիաներում գոյություն ունեն «շահերի միասնության հակամարտական ձևեր...» (տե՛ս Архив Маркса и Энгельса, т. 4, М., 1935, стр. 93)։ Կոմունիստական ֆորմացիայի ձևավորման պայմաններում խոսքը, Լենինի բառերով ասած, «բարձրագույն սոցիալիստական միասնության» մասին է (ԵԼԺ, հ. 24, էջ 289)։

Ներկայումս սովետական հասարակության սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնությունը զարգացած սոցիալիզմի սկզբնական փուլի հիմնական ցուցանիշներից է։

**Երկրորդ**, սոցիալական օրգանիզմի ամբողջականությունը կապիտալիզմի օրոք կրում է չափազանց հարաբերական, ոչ լրիվ և միակողմանի բնույթ, որը արտացոլում է հասարակական կյանքի զանազան կողմերի բացառապես անհավասարաչափ զարգացումը։

Հասուն սոցիալիզմը բնորոշ է հասարակական կյանքի բոլոր՝ տնտեսական, սոցիալ-քաղաքական և հոգևոր կողմերի ներդաշնակ զարգացմամբ։ Էկոնոմիկան, ինչպես և ամեն մի ֆորմացիայի ժամանակ, որոշիչ դեր է խաղում հասարակական զարգացման մեջ։ Բայց հասուն սոցիալիզմի ժամանակ նրա օբյեկտիվ տնտեսական օրենքի շնորհիվ հնարավոր ամեն ինչ արվում է գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների հիման վրա ամբողջ հանրային արտադրության համամասնական ու համակողմանի զարգացման հա-

մար։ Սոցիալիստական հանրային արտադրության կայուն և համակողմանի շահերը չեն բացառում, այլ ենթադրում են արդի գիտատեխնիկական առաջընթացի պահանջմունքների արգասիք հանդիսացող ճյուղերի առավել արագ աճ։ Ներդաշնակ զարգացումը, որպես հասուն սոցիալիզմի բնորոշ գծերից մեկը, պահանջում է հաղթահարել գյուղատնտեսության, ինչպես նաև տրանսպորտի, սպասարկման ոլորտների ետ մնալը հասարակության աճող պահանջմունքներից։ Հասուն սոցիալիզմի պայմաններում առաջացած այս և մյուս պրոբլեմները լուծվում են էներգետիկ, պարենային ծրագրերի կատարման միջոցով, որոնք ապահովում են սոցիալական օրգանիզմի ամբողջականությունը զարգացած սոցիալիզմի արդի փուլում։

**Երրորդ**, սոցիալական օրգանիզմի ամբողջականությունը կապիտալիզմի պայմաններում հիմնված է մասնավոր սեփականության վրա՝ հասարակության տնտեսական, սոցիալական և հոգևոր կյանքի համար նրա ծնած բոլոր արատներով։

Սոցիալական օրգանիզմի ամբողջականությունը նոր կարգի պայմաններում հիմնված է հասարակական սեփականության վրա և ժողովրդական զանգվածների կյանքի ու գործունեության՝ տնտեսական այդ հիմքի վրա առաջացած կոլեկտիվիստական սկզբունքների վրա։

**Չորրորդ**, սոցիալական օրգանիզմի ամբողջականության ձևավորումը կապիտալիզմի օրոք ունի իր պատմական սահմանը, երբ վերընթաց շարժման տևական շրջանից հետո սկսվում է վայրընթաց, թեպետև չափազանց անհավասարաչափ զարգացման ու պակաս տևական փուլը, որը, վերջին հաշվով, ավարտվում է հին հասարակության հեղափոխական վերափոխմամբ նորի։ Կոնկրետացնելով և զարգացնելով իր մտքերը, Մարքսը գրում էր, որ կապիտալիստական հասարակարգում «արտադրության պայմանները հանդես են գալիս որպես իրենք իրենց վերացնող պայմաններ, և ուստի՝ որպես արտադրության այնպիսի պայմաններ, որոնք պատմական նախադրյալներ են ենթադրում հասարակական նոր կարգի համար» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 46, ч. I, стр. 449)։

Ստեղծագործաբար զարգացնելով Մարքսի ուսմունքը, Լենինը ցույց տվեց, որ իմպերիալիզմի դարաշրջանն արդեն սոցիալիզմի նախադրյալների լրիվ նախապատրաստումն է։ Նա գրում էր, որ իմպերիալիզմը՝ որպես պետական-մոնոպոլիստական կապիտալիզմ, «սոցիալիզմի նյութական լիակատար նախապատրաստումն է, նրա նախադուռն է» (ԵԼԺ, հ. 34, էջ 245)։

Պատմությունը հաստատում է Մարքսի այն կանխատեսումը, որ կապիտալիզմի տնտեսապես ավելի զարգացած երկրներում սոցիալիստական հեղափոխությունը կհաղթանակի ավելի ուշ, քան թե ծայրամասերում։ «Բուրժուական օրգանիզմի ծայրամասերում,— գրել է Մարքսը,— բռնի ցնցումները, բնականաբար, պետք է տեղի ունենան ավելի շուտ, քան նրա սրտում, որտեղ փոխհատուցման հնարավորություններն ավելի շատ են» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 7, стр. 100)։ Բայց վերջին հաշվով բուրժուական օրգանիզմի արդեն վաղուց մաշված այդ սիրտը ևս չի դիմանա արդի աշխարհի հարաճուն հեղափոխական ցնցումներին։ Կոմունիստական ֆորմացիայի անկասելիորեն վերընթաց զարգացման պայմաններում սոցիալական օրգանիզմի ամբողջականության ձևավորման հետ տեղի է ունենում նոր կարգի՝ սոցիալիստական օրգանիզմի հետագա անշեղ առաջընթաց փոփոխություն։ Թեպետև զարգացած սոցիալիզմն ունի իր պատմական սահմանները, բայց դրանք նոր հասարակության՝ հասունության մեկ աստիճանից մյուս, ավելի բարձր աստիճանի անցնելու սահմաններ են։ Հասուն սոցիալիզմի արդեն ձեռք բերված աստիճանը բնորոշ է համապատասխան տնտեսական բազիսի, համաժողովրդական քաղաքական-իրավական և գաղափարախոսական վերնաշենքի ըստեղծմամբ, որոնք ապահովում են նոր հասարակության զարգացումը իր սեփական, կոլեկտիվիստական հիմքի վրա՝ կոմունիզմի առաջին փուլի գործառնության ու զարգացման օբյեկտիվ օրենքներին համապատասխան։

Հասուն սոցիալիզմի գլխավոր առավելություններից մեկը ավելի խոր



կապն ու անմիջական փոխներգործությունն է հասարակության տնտեսական, սոցիալ-քաղաքական և հոգևոր ոլորտների միջև։ Սոցիալիստական սոցիալական օրգանիզմի ամբողջության որակապես նոր այդ վիճակի լրիվ բացահայտման համար ՍՄԿԿ-ն, մեր երկիրը, զարգացած սոցիալիզմի կատարելագործման տևական փուլը թևակոխելու սկզբից ևեթ, ընդունել և ընդունում է հասարակության կյանքի բոլոր կողմերի ծաղկման ու հաջող գործառնության բազմակողմ ծավալուն ծրագիր։

Կուսակցության վերջին փաստաթղթերում մշակված է զարգացած սոցիալիզմի հասարակության հոգևոր կյանքի անշեղ բարձրացման գիտականորեն հիմնավորված կոնցեպցիան։ Գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի ոլորտում հրատապ խնդիրների գործնական լուծումը ոչ միայն բարերար ազդեցություն է ունենում հասարակության ողջ հոգևոր կյանքի, այլև էկոնոմիկայի վերելքի և ժողովրդական լայն զանգվածների քաղաքական ակտիվության վրա։ Տնտեսական, քաղաքական և գաղափարախոսական աշխատանքի դիալեկտիկական այդ միասնությունը՝ սկսած կոլեկտիվից, որպես սոցիալիստական հասարակության սկզբնական սոցիալական բջիջ, և վերջացրած պետական ու կուսակցական ղեկավարության միջին և բարձրագույն օղակներով, արդեն կարճ ժամանակամիջոցում ազդեց հասարակության կյանքում կատարված դրական տեղաշարժերի վրա։

Հասուն սոցիալիզմի հետագա կատարելագործումը, անցումը նրա սկզբնական հասունությունից ավելի բարձր հասունության, ուղղակի և անմիջականորեն կապված է ոչ հակամարտ հակասությունների ժամանակին բացահայտման և լուծման հետ։ Ուստի պատահական չէ, որ այժմ իսկ, մեր երկիրը զարգացած սոցիալիզմի կատարելագործման ժամանակաշրջանը թևակոխելու կապակցությամբ, կուսակցությունն առաջադրեց նոր կարգի զարգացման գործում հակասությունների պրոբլեմները համակողմանի ուսումնասիրելու անհրաժեշտության հարցը։ Անդրադառնանք ներքուստ փոխկապակցված երկու հարցերի՝ ամբողջ կոմունիստական ֆորմացիայի հիմնական շարժիչ հակասությանը և նոր հասարակական կարգի գլխավոր նպատակին։

Հասուն սոցիալիզմի հասարակության տևական գործունեության ու զարգացման պրոցեսում ավելի ու ավելի ուժեղ ու ակնբախ կգործեն կոմունիստական տիպի առաջընթացի այս երկու գործոնները։ Մարդկության ողջ նախապատմության օրինաչափությունների խոր վերլուծության և նրա իսկական պատմության արմատական առանձնահատկությունների կանխատեսման օրինակով մարքսիզմ-լենինիզմի դասականները ցույց տվեցին, որ ընդհանուր սոցիոլոգիական հակասությունը արտադրաուժերի և արտադրահարաբերությունների միջև իր զարգացման մեջ ծնում է յուրաքանչյուր առանձին վերցրած ֆորմացիայի յուրահատուկ նոր հիմնական հակասություն։ Կապիտալիզմի օրոք այդպիսի հիմնական հակասություն է արտադրության հասարակական բնույթի և յուրացման մասնավոր ձևի միջև եղած հակամարտությունը։

Կոմունիստական ֆորմացիայի ձևավորման ու զարգացման պայմաններում յուրահատուկ հիմնական ոչ հակամարտ հակասություն է դառնում հասարակության գլխավոր արտադրաուժի՝ մարդու, ժողովրդի անշեղորեն աճող պահանջմունքների և նյութական ու հոգևոր արտադրության ձեռք բերված մակարդակի միջև եղած հակասությունը։ Սա իրոք կոմունիստական շարժիչ հակասություն է։

Սոցիալիզմի հիմնական հակասության պրոբլեմը բավական մանրամասն լուսաբանվել է մեր գրականության մեջ։ Հետազոտողները իրավամբ նշում են, որ սոցիալիզմի հիմնական հակասության հիման վրա առաջացած պրոբլեմները շարունակ հաշվի առնելը և ժամանակին լուծելը հնարավորություն է ընձեռում հանրային արտադրության կառուցվածքը համամասնորեն զարգացնելու ու գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների միջոցով, դաստիարակելու խելամիտ պահանջմունքներ, արդյունավետորեն կարգավորելու աշխատանքի, արտադրության, նյութական բարիքների բաշխման հարցերը՝ ար-

ընդունել են մասսայական բնույթ։ Բավական է ասել, որ 80-ական թվականների սկզբին ժողովրդական տնտեսության մեջ աշխատողների 95 տոկոսը մասնակցում է սոցիալիստական մրցությանը, դրանցից 35 տոկոսը՝ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժմանը։ Կյանքը ցույց է տվել, որ մեր հասարակության՝ դեպի վերջնական նպատակ՝ դեպի կոմունիզմ առաջընթաց շարժման հեռանկարների ըմբռնման մեջ անհրաժեշտ է խուսափել ինչպես առաջ վազելուց, այնպես էլ այն բանը մոռանալուց, որ հասուն սոցիալիզմի կատարելագործումը միաժամանակ նաև աստիճանական առաջընթաց է դեպի կոմունիստական ֆորմացիայի ձևավորման նոր աստիճաններ։

Լենինը Մարքսի կարևորագույն ծառայությունը համարում էր այն, որ նա առաջինը կարողացավ փայլուն կերպով դիալեկտիկան կիրառել հին հասարակությունից նորի ծննդյան պրոցեսի նկատմամբ, կանխատեսել այդ հնից դեպի նորը տանող անցման փուլերը (տե՛ս ԵԼԺ, հ. 33, էջ 61)։

Վ. Ի. Լենինը մեր կուսակցությանն ավանդել է նոր հասարակության կառուցման ղեկավարման պրոցեսում «խստորեն զանազանել իրենց բնության տարբեր փուլերը, զգաստ կերպով հետազոտել նրանց անցման պայմանները» (ԵԼԺ, հ. 9, էջ 157)։ Շեշտելով այդ միտքը, Կ. Ու. Չեռնենկոն ՍՍՀՄ գրողների միության վարչության հոբելյանական պլենումում նշեց. «...զարգացած սոցիալիզմի փուլի տևականությունը բնավ չի նշանակում, թե մենք կարող ենք չհոգալ տեմպերի մշտական արագացման մասին, հետաձգել ինչ-որ հասունացած գործեր։ Այսօր մենք մեր զարգացման առավելագույն արագացմանն ենք նպատակամղում ժողովրդի բոլոր ստեղծագործական ուժերը, նրա աշխատանքային ձեռներեցությունը»։

Այս դրույթների լույսի ներքո, մեր կարծիքով, անհրաժեշտ է ամենայն լրջությամբ խորհել կոմունիզմի միջին փուլի վերաբերյալ լենինյան մտքի կենսականության մասին։ Այս գաղափարը Լենինն առաջին անգամ արտահայտել է միջազգային կոմունիստական շարժման մեջ եղած ձախ և վոլյունտարիստական հայացքների դեմ մղված պայքարի ընթացքում։

«Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ հիրավի հանճարեղ աշխատությունում Վ. Ի. Լենինը գրում էր. «Կոմունիզմի տեսակետից ժխտել կուսակցականությունը՝ նշանակում է կապիտալիզմի կրախի նախօրյակից ...թռիչք կատարել դեպի կոմունիզմի ո՛չ թե ստորին և ո՛չ էլ միջին, այլ բարձրագույն փուլը» (ԵԼԺ, հ. 41, էջ 32)։

Տեսական և մեթոդաբանական առումով այս պրոբլեմը հրատապ էր ոչ միայն կոմունիստական ֆորմացիայի առաջացման սկզբին, երբ Լենինը դնում էր այդ հարցը, այլ առավել հրատապ է այսօր, երբ առաջացել է աշխարհի կոմունիստական արարման հիմնական փուլերը գիտականորեն կանխատեսելու անհրաժեշտություն։

Պատմական փորձը հաստատել է մարքսիզմ-լենինիզմի դասականների այն կանխատեսումը, որ կոմունիստական հասարակարգի երկու գլխավոր փուլերի միջև գոյություն ունեն ոչ միայն ընդհանուր գծեր, այլ նաև հսկայական տարբերություն։ Ուստի կոմունիստական հասարակարգ չի կարելի նույնիսկ հիմնականում կառուցել առանց անցման աստիճանների։ Ռեալիստորեն իմաստավորելով այդ պրոբլեմը, հասուն սոցիալիստական հասարակության՝ դեպի կոմունիզմի բարձրագույն փուլը առաջընթաց շարժման հեռանկարները քննարկելիս սխալներից խուսափելու համար անհրաժեշտ է ամուր հենվել կոմունիստական հասարակարգի ստորին փուլի կառուցման արդեն գոյություն ունեցող ինտերնացիոնալ փորձի վրա։ Այդ փորձը ցույց է տալիս, որ այդ փուլի ձևավորումը սկզբում ընդգրկում է սոցիալիզմի հիմքի կամ հիմքերի ստեղծման ժամանակաշրջանը, այնուհետև՝ նոր հասարակարգի կառուցումը հիմնականում և վերջապես՝ հասուն սոցիալիստական հասարակարգի կառուցումը ու նրա տևական ու պլանաչափ կատարելագործումը։ Հասուն սոցիալիզմի կատարելագործման փուլը դրա հետ մեկտեղ նաև մեր կյանքում կոմու-



նիստական սկզբունքների ամրապնդման ժամանակաշրջանն է, աստիճանաբար դեպի կոմունիզմ առաջընթացի ժամանակաշրջանը։

Հենվելով գիտական կոմունիզմի անսասան սկզբունքների վրա, մենք պետք է համակողմանիորեն հարստացնենք կոմունիստական ֆորմացիայի բարձրագույն փուլի բնութագիրը՝ զարգացած սոցիալիզմի կատարելագործման պրոցեսում անխուսափելիորեն առաջացող ապագայի համատարած ծիլերի և ընձյուղների ընդհանրացման հիման վրա։ Ամբողջ իսկական կոմունիստական նորը հասարակության համակողմանի զարգացման պրոցեսում կոմունիզմի միջին փուլով կհանգեցնի կոմունիզմի բարձրագույն փուլին։

Մեթոդաբանական պլանով այդ միջակա փուլի՝ կոմունիզմի միջին փուլի անխուսափելիությունը կարելի է կանխատեսել, պարզորոշ ըմբռնելով այն, որ հասարակության մեջ երբեք լիակատար համապատասխանություն չի լինի նրա զանազան կառուցվածքային տարրերի՝ արտադրության, բաշխման, հասարակական կեցության ու գիտակցության միջև և այլն։ Անհրաժեշտ է միշտ հիշել Լենինի մեթոդաբանական այն կարևորագույն ցուցումը, որ «լրիվ համապատասխանություն չի լինում բնության նույնիսկ ամենապարզ երևույթների մեջ» (ԵԼԺ, հ. 26, էջ 183), որ այսուհետ ևս, նույնիսկ կոմունիզմի օրոք, այդպիսի բացարձակ համապատասխանություն «երբեք չի լինի, որ այն չի կարող լինել բնության զարգացման մեջ, ինչպես և հասարակության զարգացման մեջ...» (ԵԼԺ, հ. 36; էջ 376)։

Կոմունիստական ֆորմացիայի ու նրա զանազան փուլերի ձևավորման դիալեկտիկան խորապես հասկանալու համար մեթոդաբանական սկզբունքային նշանակություն ունի Լենինի այն դրույթը, որ «կյանքը առաջ է ընթանում հակասություններով, և կենդանի հակասությունները շատ ու շատ անգամ ավելի հարուստ, ավելի բազմակողմանի, ավելի բովանդակալից են, քան սկզբից կարող է թվալ մարդու բանականությանը» (ԵԼԺ, հ. 47, էջ 266)։

Վ. Ի. Լենինը պահանջում էր դիալեկտիկական-մատերիալիստական այս անսասան դրույթները ստեղծագործաբար կիրառել նոր ֆորմացիայի զարգացման բոլոր փուլերի ձևավորման օրինաչափությունների բացահայտման նկատմամբ։ Ըստ երևույթին, կոմունիզմի միջին փուլի համար բնորոշ կլինի հակասությունը կոմունիզմի բարձրագույն փուլի աճող տարրերի և նրա ստորին փուլի յուրահատուկ գծերի միջև։ Ելնելով մեթոդաբանական այսպիսի նախադրյալից, տեսականորեն կարելի է ենթադրել, որ կոմունիզմի միջին փուլը սոցիալիզմի բնորոշ հատկանիշները կզուգակցի կոմունիզմի բարձրագույն փուլի կարևորագույն տարրերի հետ։ Ավելի ընդհանրացված առումով այդ միջին փուլը կարտացոլվի սոցիալիզմի և կոմունիզմի հիմնական սկզբունքների զանազան կողմերի միաժամանակյա գործողության մեջ, երբ դեռ ըստ աշխատանքի գերակշիռ բաշխումը ավելի ու ավելի մասսայական չափով կզուգակցվի ըստ խելամիտ պահանջմունքների բաշխման հետ՝ բաշխման աճող հանրային ֆոնդերի միջոցով։

Այս կարևորագույն պրոբլեմի լուծման աղբյուրը կլինի արտադրության հանրային միջոցների նկատմամբ ժողովրդական զանգվածների ունեցած միատեսակ վերաբերմունքի և նյութական ու հոգևոր բարիքների բաշխման բնագավառում որոշ անհավասարության միջև սոցիալիզմի ժամանակ եղած գլխավոր հակասության աստիճանական գործնական հաղթահարումը։ Այս ամենը կապված է սոցիալական լիակատար հավասարության հասնելու պրոբլեմի հետ։ Սոցիալական հավասարության պրոբլեմը առավել այժմեական է դառնում զարգացած սոցիալիզմի կատարելագործման և աստիճանաբար կոմունիզմին անցնելու հետ զուգընթաց։

Այս պրոբլեմի գործնական լուծման ժամանակ սխալ թույլ չտալու համար մշտապես հիշենք գիտական կոմունիզմի սկզբունքային տեսական դրույթը տվյալ հարցի մասին։ Լենինը գրում էր, որ «հավասարությունը դատարկ ֆրազ է, եթե հավասարություն ասելով չհասկանանք դասակարգերի ոչնչացում։ Մենք ցանկանում ենք ոչնչացնել դասակարգերը. այդ տեսակետից մենք

հավասարության կողմնակից ենք։ Բայց հավակնել, թե մենք բոլոր մարդկանց միմյանց կհավասարեցնենք, դա... ամենադատարկ ֆրազ է...» (ԵԼԺ, հ. 38, էջ 440)։ Հավասարության մասին այս սահմանափակ, ոչ գիտական պատկերացման տեսական հիմքը սոցիալական հավասարության նույնացումն է ֆիզիոլոգիական ընդունակությունների հավասարության հետ։

Մինչդեռ բնական ընդունակությունների ու ձիրքերի հավասարություն երբեք չի եղել և չի էլ լինի։ Կոմունիստական հասարակության ուժն ու առավելությունն այն է, որ մարդկանց ընդունակությունների բազմազանությունից անկախ նրանք բոլորն էլ իրենց գիտակցական և արտադրողական աշխատանքի համար կստանան ըստ իրենց խելամիտ պահանջմունքների։ Բայց միանգամից անհնար է հասնել կոմունիստական այդ հավասարության։ Պահանջվում է սոցիալիստական և կոմունիստական հավասարության հիմունքների զուգակցման հատուկ փուլ։ Այստեղ տեղին է հիշել Վ. Ի. Լենինի հետևյալ խոսքերը. «Միայն սոցիալիզմը հնարավորություն կտա արդյունքների հասարակական արտադրությունն ու բաշխումը լայնորեն տարածել և գիտական նկատառումներով իսկապես ենթարկել այն նպատակին, թե ինչպես բոլոր աշխատավորների կյանքը դարձնել առավել հեշտ և նրանց բարեկեցության հնարավորություն ընձեռող» (ԵԼԺ, հ. 36, էջ 467)։ Այնուհետև, շարունակելով այդ միտքը, Լենինը մատնանշում էր. «...դա էլ հենց սոցիալիզմն է, երբ յուրաքանչյուրը ցանկանում է բարելավել իր դրությունը, երբ բոլորն ուզում են օգտվել կյանքի բարիքներից» (Նույն տեղը, էջ 611)։

Տնտեսական առումով կոմունիզմի միջին փուլի ժամանակաշրջանին համապատասխանելու է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը՝ գիտատեխնիկական գլոբալ հեղափոխության տվյալների առավելագույն օգտագործմամբ, որը ապահովում է ամբողջ հանրային արտադրության համակողմանի ավտոմատացումը՝ ռոբոտների և գիտատեխնիկական այլ միջոցների կիրառմամբ, որոնք մարդուն ազատում են լարված ու միապաղաղ աշխատանքից՝ արտադրողին դարձնելով ամբողջ նյութական և հոգևոր արտադրության գիտակից կերտողն ու կարգավորողը։

Սոցիալական առումով կոմունիզմի միջին փուլը կբնորոշվի ոչ միայն հասարակության գլխավոր ու հիմնական դասակարգային տարբերությունների հաղթահարմամբ, որը ձեռք է բերվելու դեռ առաջին փուլի շրջանակներում, այլև քաղաքի և գյուղի միջև, ֆիզիկական և մտավոր աշխատանքի մարդկանց միջև եղած սոցիալական հիմնական տարբերությունների հաղթահարմամբ։ Պետք է ենթադրել, որ մինչ այդ շրջանառության մեջ կդրվի նոր, ընդհանրացնող՝ «կոմունիզմի աշխատավոր» սոցիալական հասկացությունը։ Եթե զարգացած սոցիալիզմի կատարելագործման պայմաններում արդեն լայնորեն տարածվում է «սոցիալիզմի աշխատավոր» հասկացությունը, ապա կոմունիզմի միջին փուլում միաժամանակ կենցաղի մեջ կմտնի նաև նոր՝ «կոմունիզմի աշխատավոր» հասկացությունը։

Զարգացած սոցիալիզմի կատարելագործման և կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանի իրական և առաջատար միտումների տեսական այս ընդհանրացումները հնարավորություն են ընձեռում գիտականորեն կանխատեսելու կոմունիզմի բարձրագույն փուլի բնորոշ շատ հատկանիշներ։ Այսպիսով, կարելի է կոմունիստական ֆորմացիայի ձևավորման պատմական աստիճանների մասին հետևյալ ընդհանրացումն անել. կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանը համեմատաբար պակաս տևական է, քան կոմունիզմի ստորին փուլից անցումը նրա միջին փուլին, որը, ըստ երևույթին, գոյություն կունենա երկար ժամանակ, նրա գործառնության ընթացքում աստիճանաբար կհասունանա կոմունիստական հասարակարգի բարձրագույն փուլը։

# ՏԵՂԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆԸ՝ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ԶԱՐԳԱՑՈՒՄ

**Վ. ԱՎԵՏԻՍՅԱՆ**

ՍՄԿԿ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ բարձրագույն նպատակը սովետական ժողովրդի նյութական ու կուլտուրական պահանջմունքների առավելագույն բավարարումն է՝ հանրային արտադրության հետագա զարգացման և արդյունավետության համակողմանի բարձրացման հիման վրա։ Դրան են նպատակամղված կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական կառավարության հետագա որոշումները։

Կ. Ու. Չեռնենկոն Զարգացած սոցիալիզմի պահանջների մակարդակին հոդվածում նշել է. «...եթե մեր հասարակության հետագա զարգացումը դիտվում է որպես շարժում դեպի սոցիալիստական իդեալի լրիվ իրականացում, ապա դրանով դրվում է նաև այդ զարգացման պարտադիր սոցիալական կողմնորոշիչը՝ ժողովրդի բարեկեցության ամենաբարձր վերելքը։ Դրան կարելի է հասնել միայն աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա»։

Արտադրության բարձր արդյունավետության հասնելու գործում կարևոր դեր են խաղում արտադրության հասարակական կազմակերպման պրոգրեսիվ ձևերի զարգացումը, արտադրության տերիտորիալ կազմակերպման կատարելագործումը։ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի «Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին» ծրագրային որոշման մեջ նախատեսվում է ապահովել «ճյուղային և տերիտորիալ զարգացման, հեռանկարային և ընթացիկ պլանների ռացիոնալ զուգակցումը, միջճյուղային և ներճյուղային համամասնությունների կատարելագործումը, էկոնոմիկայի հաշվեկշռված աճի ապահովումը» և «արտադրական ֆոնդերի, նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը, ժողովրդական տնտեսության մեջ խնայողության ռեժիմի ուժեղացումը և կորուստների վերացումը»։

Արդյունաբերական արտադրության տերիտորիալ կազմակերպումը տարբեր ճյուղերի և ձեռնարկությունների տարածական զուգակցումն է՝ հիմնված բոլոր տեսակի ռեսուրսների ռացիոնալ օգտագործման, հումքի աղբյուրների, արտադրության ու արտադրանքի սպառման տեղաբաշխման մեջ առկա անհամապատասխանությունները հաղթահարելու համար նախատեսված ծախսումների խնայողության վրա, որը նպաստում է արտադրության արդյունավետության բարձրացմանը։

Արտադրության տերիտորիալ կազմակերպման կարևորագույն սկզբունքները՝ ժողովրդական տնտեսության զարգացման մասնագիտացումն ու կոմպլեքսայնությունը, իրականացվում են ճյուղային և տերիտորիալ պլանավորման զուգակցման մեխանիզմի միջոցով։ Այս երկու ձևերի միասնությունը տերիտորիալ արտադրական կոմպլեքսների ստեղծման ու զարգացման հիմքն

ունի միասնական կենտրոնացված ճյուղային ղեկավարման զուգակցումը տեղական նախաձեռնության հետ։ Այդ արդյունաբերության ձեռնարկություններն ունեն ենթակայության երկակի ձև. դրանք ենթակա են ճյուղային մինիստրությանը և իշխանության տեղական մարմիններին։ Քանի որ տեղական արդյունաբերությունն օրգանապես կապված է քաղաքի, շրջանի տնտեսության հետ, իշխանության տեղական մարմինները մեծ հնարավորություններ ունեն իրականացնելու ճյուղի առավել արդյունավետ ղեկավարումը՝ առավելագույնս հաշվի առնելով տվյալ ռեգիոնի պահանջմունքները։

Կենտրոնական պլանավորող մարմիններին վերապահված է միայն տեղական արդյունաբերության զարգացման հիմնական ուղղությունների որոշումը՝ դրանք հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման հետ կապակցելու համար։ ՍՍՀՄ սահմանադրության մեջ արձանագրված է. «Ժողովրդական դեպուտատների տեղական սովետներն իրենց լիազորությունների շրջանակներում ապահովում են տնտեսական և սոցիալական կոմպլեքսային զարգացումը իրենց տերիտորիայում... կոորդինացնում և վերահսկում են նրանց գործունեությունը հողօգտագործման, բնության պահպանության, շինարարության, աշխատանքային ռեսուրսների օգտագործման, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության, բնակչության սոցիալ-կուլտուրական, կենցաղային և այլ սպասարկման բնագավառում»։ Այսպիսով, բոլոր հիմքերը կան և՛ մեթոդաբանական, և՛ կազմակերպական առումով լուծելու տեղական արդյունաբերության ճյուղային ու տերիտորիալ կառավարման զուգակցման պրոբլեմները։ Սակայն դեռևս հստակորեն սահմանված չեն տեղական սովետների ֆունկցիաներն այդ հարցում։ Մեր կարծիքով, իշխանության տեղական մարմինները, ելնելով շուկայի պահանջներից, կարող են վճռական դեր խաղալ տվյալ վարչական շրջանում ձեռնարկությունների պրոֆիլի որոշման, արտադրության կենտրոնացման և մասնագիտացման գործում։

Հատկապես կարևոր է արտադրության մեջ թափոնների օգտագործման բաժնի մեծացումը։ Սակայն, ինչպես ցույց են տալիս ուսումնասիրությունները, ներկայումս տեղական արդյունաբերության մեջ օգտագործվող հումքային ռեսուրսների մեծ մասը դրսից բերվող հումք է՝ կենտրոնացված բաշխմամբ, ինչը հակասում է տեղական արդյունաբերության կազմակերպման սկզբունքներին։ Ուստի ճյուղի ձեռնարկությունների տերիտորիալ կազմակերպման, կենտրոնացման և մասնագիտացման միակ ուղին արտադրությունները տեղական հումքի ռեսուրսներով և խոշոր արդյունաբերության թափոններով ապահովելն է։

Խոշոր ձեռնարկություններում լայն գործածության իրերի պատրաստման արտադրամասերի ստեղծումն այսօրվա վիճակով լիովին չի լուծում արդյունաբերության թափոնների օգտագործման հարցը։ Այս խնդրում մեծ է տեղական արդյունաբերության դերը։ Արտադրության թափոնների անբավարար օգտագործումը, մեր կարծիքով, հետևանք է դրանց կենտրոնացված հաշվառման ու օգտագործման բացակայության։ Այս կապակցությամբ անհրաժեշտ է իշխանության տեղական մարմիններին առընթեր այնպիսի համապատասխան հանձնաժողովների ստեղծումը, որոնք լիակատար պատասխանատվություն կրեն տվյալ շրջանում գործող տեղական արդյունաբերության կողմից զանազան ճյուղերի ձեռնարկությունների թափոնների օգտագործման համար։ Այսպիսով, տեղական արդյունաբերության զարգացման մեջ գլխավորը տերիտորիալ կազմակերպման կարևորագույն սկզբունքների պահպանումն է։

Քննարկված հարցերի լուծումը, անշուշտ, կնպաստի կուսակցության ծրագրած խնդիրների կատարմանը և հանրապետության տեղական արդյունաբերության արդյունավետության հետագա բարձրացմանը։

---

# ՈՒՍՈՒՑՄԱՆ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ ՊՐՈՖՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆՆԵՐՈՒՄ

**Ս. ԲԱՏԻՇԵՎ**
Սովետական Միության հերոս, ՍՍՀՄ մանկավարժական գիտությունների ակադեմիայի իսկական անդամ

ՀԱՆՐԱԿՐԹԱԿԱՆ ԵՎ ՄԱՍՆԱԳԻՏԱԿԱՆ ԴՊՐՈՑԻ ռեֆորմով պատասխանատու նոր խնդիրներ առաջադրվեցին պրոֆտեխնիկական կրթության պետական համակարգին. նախօրոք և պլանաչափորեն պատրաստել որակյալ բանվորներ, որոնք մի կողմից համապատասխանեն ծավալվող գիտատեխնիկական հեղափոխությանը, տիրապետեն տեխնիկական և տնտեսական ծավալուն գիտելիքների, ունենան կուլտուրական բարձր մակարդակ, մյուս կողմից՝ լինեն քաղաքականապես ակտիվ, գիտակցաբար ու ստեղծագործաբար վերաբերվեն աշխատանքին։

Մեր պետության տարբեր փուլերում, երբ նկատվել է, որ պրոֆտեխնիկական կրթության համակարգի զարգացումը ետ է մնում արտադրության պահանջներից, կուսակցությունն ու կառավարությունն ամեն անգամ անհրաժեշտ միջոցներ են ձեռնարկել այն հաղթահարելու համար, նշել դրա բարելավման ուղիները։

Հանրակրթական և պրոֆտեխնիկական դպրոցի ռեֆորմը, որը հանդիսացավ սոցիալ-քաղաքական նշանակություն ունեցող խոշոր իրադարձություն, կոչված է բարձրացնելու յուրաքանչյուր առարկայի դասավանդման որակը, խորացնելու գիտությունների հիմունքների տիրապետման մակարդակը, բարելավելու սովորողների գաղափարաքաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակությունը, գեղագիտական ու ֆիզիկական զարգացումը, ապահովելու նրանց կոմունիստական համոզմունքների ձևավորումը, համակելու սոցիալիստական հայրենիքի նկատմամբ նվիրական սիրով և այն պաշտպանելու պատրաստակամությամբ, պրոլետարական ինտերնացիոնալիզմով։

Կուսակցության նախանշած պլանների իրականացման համար ծավալված պայքարում առավելապես կարևորվում է գիտատեխնիկական առաջընթացը, որը սերտորեն շաղկապված է նոր մարդու դաստիարակության, ժողովրդական տնտեսությունը բարձրորակ կադրերով պլանաչափորեն ապահովելու հետ։ Այդպիսի բանվորի մասնագիտական գործունեությունը բնութագրվում է տեխնիկական ու պրոֆեսիոնալ խոր գիտելիքներով, ռացիոնալիզատորության, գյուտարարության, նորարարության կարողությամբ։ Եվ այսօր նա բանվոր-մտավորական է, աշխատանքային բազմապիսի հմտություններ ունեցող, ստեղծաբար, որ ունակ է գործունեության մի տեսակից անցնել մյուսին՝ արտադրության արագ փոփոխվող պայմաններին ու պահանջներին համապատասխան։

Վիճակագրական տվյալների համաձայն այժմ բանվորների կեսից ավելին ունեն երկու և ավելի մասնագիտություն ու արհեստ։ Եթե մինչև 1960 թվականը բանվորական արհեստների և մասնագիտությունների անվանացանկը ՍՍՀՄ-ում ներառնում էր 30 հազար արհեստ ու մասնագիտություն, վաթսունական թվականներին՝ ավելի քան 12 հազար, ապա այսօր այն հասնում է 6,5 հազարի։

թյուն կրնձեռի ավելի նպատակամետ և արդյունավետ դարձնելու բարձր որակավորում ունեցող բանվորների պատրաստման համակարգը: Ահա ինչու միջնակարգ պրոֆտեխնիկական ուսումնարանների զարգացման հեռակա պլանները և դրանց աշխատանքի բովանդակությունը պետք է սերտորեն փոխկապակցված լինեն ինչպես ձեռնարկությունների, նույնպես և ամբողջ ճյուղի զարգացման հեռանկարային կոմպլեքսային պլանների հետ: Եվ այդ հասկանալի է. կատարելագործվում է արտադրությունը, համապատասխանաբար պետք է կատարելագործվի նաև բանվորական կադրերի կառուցվածքը: Վերջինս էլ իր հերթին ներգործում է աշխատանքի կազմակերպման առաջավոր ձևերի զարգացման, աշխատանքի արտադրողականության շեշտակի բարձրացման վրա: Միջնակարգ պրոֆտեխնիկական ուսումնարանների հետագա առավել արագ զարգացումը թույլ կտա խոշոր առաջընթաց քայլ կատարելու նոր պրոֆեսիոնալ-որակավորման բարձր կազմակերպված կառուցվածքի ստեղծման մարզում: Պրոֆտեխնիկական կրթության հետագա կատարելագործման հիմնական միջոցներից են նաև գիտականորեն հիմնավորված ուսումնական պլաններն ու ծրագրերը: Ընդ որում նպատակահարմար է, թերևս, այդ աշխատանքը վարել երկու ուղղություններով: Նախ՝ ներկայումս գործող ուսումնական պլանների ու ծրագրերի կատարելագործում, ապա՝ սկզբունքորեն նոր ուսումնական պլանների ու ծրագրերի մշակում և դրանց փորձնական ստուգում՝ ուսումնասիրվող պրոֆեսիաների յուրահատկության հաշվառմամբ և սովորողների հանրակրթական նախապատրաստման նկատմամբ տարբերակված մոտեցմամբ:

Միջնակարգ պրոֆտեխնիկական ուսումնարանների լավագույն, բարձր որակավորում ունեցող բանվորների պատրաստման համար համապատասխան ուսումնական պլան կազմելիս հարկ կլինի լուծել մի շարք խնդիրներ. մշակել ուսումնական պլանի նոր կառուցվածք, պարզել հաստատված առարկայախմբի ուսումնասիրության, ըստ կուրսերի և ժամերի բաշխման նպատակահարմարությունը: Սահմանել ուսումնական առարկաների բովանդակությունն ու կառուցվածքը, նշել դրանց ազդեցությունը պրոֆեսիոնալ վարպետության ձևավորման վրա: Հարկ է ճշտել առարկաների ավանդական սահմանների կազմը, ընդգրկել նոր գաղափարներ ու սկզբունքներ բովանդակող, ուսումնասիրվող առարկայի յուրահատկությունն արտացոլող նոր բաժիններ, ընդհանուր պոլիտեխնիկական և պրոֆեսիոնալ կրթության փոխհարաբերության ճշգրտման հիման վրա վերանայել դրանց տեսակարար կշիռը՝ սովորողների պրոֆեսիոնալ վարպետության վրա դրա ներգործման առումով:

Ուստի կրթության բովանդակության ուսումնասիրության հիմնական հարցերից մեկը հանրակրթական և ընդհանուր տեխնիկական առարկաների ու արտադրական ուսուցման և հատուկ տեխնոլոգիայի լավագույն փոխհարաբերության սահմանումն է: Դրանց փոխադարձ կապի բնորոշումը բացահայտում է ուսումնական առարկայի տրամաբանությունը, իսկ այդ, անտարակույս, կնպաստի դիդակտիկ խնդիրների հաջող լուծմանը, սովորողների գիտելիքների խորացմանը, նրանց դաստիարակվածության բարձրացմանը: Անհրաժեշտ է փորձնական ճանապարհով ստուգել ուսումնասիրվող առարկայի և արտադրական ուսուցման, մասնավորապես հանրակրթական առարկաների և ուսումնասիրվող մասնագիտության փոխադարձ կապի ձևերը, սահմանել հանրակրթական առարկաների ավանդման պրոֆեսիոնալ ուղղվածության կենսագործման ուղիները, բացահայտել պոլիտեխնիկական կրթության սկզբունքի իրականացման եղանակները, ուսուցման և դաստիարակության պրոցեսների փոխադարձ օրգանական կապը միջնակարգ պրոֆտեխնիկական ուսումնարաններում և մշակել այդ հարցերին վերաբերող մեթոդական կոնկրետ հանձնարարականներ: Միջնակարգ պրոֆտեխնիկական ուսումնարաններում ուսուցման բովանդակությունը սահմանելու նպատակով տարվող ուսումնասիրության հիմնական խնդիրն է՝ համապատասխանեցնել այն սոցիալական և գիտատեխնիկական առաջընթացի պահանջներին:

Գիտատեխնիկական առաջընթացի բնորոշ առանձնահատկություններից է ընդլայնվող միասնականացումը, բլոկների, հանգույցների, տարբեր սարքերի,



մեքենաների ու սարքավորումների մասերի, տարրերի, էներգիայի աղբյուրների ու դրանց կիրառման օրենքների ընդհանրությունը: Օրինակ, արդյունաբերության մեջ ակնբախ է մեքենաների բազմատիպությունը, բայց դրանք նաև համանմանություն ունեն և միշտ էլ հիմնվում են ընդհանուր սկզբունքների վրա. արտադրապրոցեսների կառավարման կոմպլեքսային ավտոմատացման համար միևնույն էհմ-երն են օգտագործվում մետաղագործական, քիմիական, վերամշակման ու արդյունաբերության այլ բնագավառներում: Արտադրության գիտատեխնիկական հիմքերի ընդհանրությունը հանգեցնում է տարբեր պրոֆեսիաների գիտական հիմքի ընդհանրության , ուստի և համանման են դառնում հանրակրթական, ընդհանուր տեխնիկական և մասնագիտական պատրաստության գործին առաջադրվող պահանջները: Կազմավորվում է բարձր որակավորում ունեցող բանվորների պատրաստման սկզբունքորեն նոր հիմք: Ինչպես ցույց են տվել ուսումնասիրությունները, նոր մոտեցման էությունն այն է, որ բարձր որակավորման բանվորների ուսուցման ողջ պրոցեսը բաժանվում է երկու փուլի— հիմնական և մասնագիտական: Ուսուցման հիմնական փուլում, որն իր ծավալով կազմում է ուսման ողջ տևողության մոտ 85 տոկոսը (պայմանավորված ուսումնասիրվող պրոֆեսիայով), դրվում է ուսուցման հիմքը, կատարվում է պրոֆեսիոնալ, պոլիտեխնիկական նախապատրաստություն, անկախ գիտատեխնիկական առաջընթացի ազդեցությամբ տեղի ունեցող արագ փոփոխություններից: Սովորողներն այս ընթացքում ձեռք են բերում արդյունաբերության բոլոր բնագավառներին բնորոշ առավել տիպական գիտելիքներ, հմտություններ և ունակություններ: Տվյալ պրոֆեսիայի հիմքը կազմող բոլոր մասնագիտությունների (օրինակ՝ փականագործի պրոֆեսիան ընդգրկում է շատ մասնագիտություններ— փականագործ-վերանորոգող, փականագործ-հավաքորդ և այլն), ընդհանուր պրոֆեսիոնալ պոլիտեխնիկական պատրաստության համար ուսուցանվում են հետևյալ առարկաները— հանրակրթական, տեխնիկական գծագրություն, տեխնիկական մեխանիկա, տեխնիկական չափումներ, արտադրության կազմակերպում և էկոնոմիկա և ընդհանուր մասնագիտական-համաճյուղային հարցեր:

Ուսուցման առաջին փուլում սովորողների մոտ կմշակվի գործունեության մի տեսակից մի այլ տեսակի անցնելու ունակություն՝ համապատասխան արտադրության արագ փոփոխվող պայմանների և աշխատանքի կատարման մեթոդների: Ծրագրի այս մասը կարող է անփոփոխ մնալ 10—15 և ավելի տարիներ, այն պետք է իրականացվի կենտրոնացված ձևով և պարտադիր լինի բոլոր միջնակարգ պրոֆտեխնիկական ուսումնարաններում, պրոֆեսիաների որոշակի խումբ ուսումնասիրելիս: Ուսուցման մասնագիտական փուլում սովորողներն ընդհանուր պրոֆեսիոնալ պոլիտեխնիկական նախապատրաստության հիման վրա ձեռք են բերում գիտելիքներ, հմտություններ և ունակություններ. որոնք կիրառելի են արդեն կոնկրետ մասնագիտության ուսումնասիրման և կոնկրետ աշխատատեսակներ կատարելու համար: Ծրագրի այս մասի ծավալը կազմում է ուսման ողջ տևողության մոտ 15 տոկոսը, այն ենթակա է ավելի արագ փոփոխության գիտատեխնիկական առաջընթացի ազդեցությամբ (3—5 տարի), ուստի և այն պետք է մշակվի տեղերում, պրոֆտեխնիկական կրթության մարմինների կողմից արտադրության տվյալ պայմաններին համապատասխան, որտեղ սովորողներն անց են կացնում արտադրական պրակտիկան և որտեղ պիտի աշխատեն միջնակարգ պրոֆտեխնիկական ուսումնարանն ավարտելուց հետո: Ինժեներամանկավարժական աշխատողների բարձր որակավորումն այժմ հնարավորություն է ընձեռում տեղերում կազմակերպելու այդ: Ուսուցման նման տարբերակումը կհանդիսանա նորարակ երևույթ պրոֆտեխնիկական ուսուցման համակարգում, որը կբարձրացնի տեղական մարմինների ինքնուրույնությունն ու պատասխանատվությունը սովորողների ուսուցման ու դաստիարակության գործում՝ հաշվի առնելով տվյալ ձեռնարկության, տվյալ շրջանի և արդյունաբերության տվյալ բնագավառի պահանջները:

Հետևաբար այս խնդրում հույժ կարևոր է բանվորի նախապատրաստումը՝ կոնկրետ մասնագիտությամբ աշխատելու: Այսպիսով, պրոֆեսիոնալ-տեխնիկական նախապատրաստությունը նոր տիպի բանվորի ձևավորման հիմնական

Հրատապ այն հարցերից մեկը, որի լուծմամբ պայմանավորված է սովորող երիտասարդության պրոֆտեխնիկական կրթության արդյունավետությունը, միջնակարգ պրոֆտեխնիկական ուսումնարանների աշխատանքի մանկավարժորեն հիմնավորված ռեժիմի մշակումն ու ներդրումն է, որով և կապահովվեն սովորողների ուսման, աշխատանքի ու հանգստի ռացիոնալ կազմակերպումը, նրանց աշխատունակության բարձրացումը:

Այս խնդրի լուծման համար հարկավոր է նախ՝ ուսումնասիրել սովորողների աշխատունակությունը պայմանավորող արտաքին գործոնները (ուսուցման սանիտարահիգիենիկ պայմանները, ուսումնական ռեժիմը) և երկրորդ՝ ուսումնասիրել պատանու օրգանիզմի՝ պրոֆեսիոնալ գործունեությանը հարմարվելու ունակության ֆիզիոլոգիական մեխանիզմները, ինչպես և մասնագիտական կարևոր հատկանիշների ու հմտությունների զարգացումը:

Նկատի ունենալով միջնակարգ պրոֆտեխնիկական ուսումնարանների ուսումնական պլանի բազմառարկայությունը և առարկաների եռացիկլությունը (հանրակրթական, ընդհանուր տեխնիկական և պրոֆեսիոնալ), սովորողների աշխատունակության բարձրացման համար մեծ նշանակություն ունեն ուսումնական ծանրաբեռնվածության սահմանումը սովորողների տարիքային հնարավորություններին համապատասխան, օրվա ընթացքում ուսումնասիրվող առանձին առարկաների կազմը և հաջորդականությունը, կատարվելիք աշխատանքի ծավալը, դրա ժամանակաբաշխումը, ֆիզիկական և մտավոր աշխատանքի տարբեր տեսակների ճիշտ հերթագայությունը, օրվա ընթացքում դասերի ռացիոնալ բաշխումը և դրա հիման վրա գիտականորեն հիմնավորված ֆիզիոլոգիահիգիենիկ հանձնարարականների մշակումը՝ սովորողների աշխատանքի ռեժիմը որոշելու համար անհրաժեշտ ուսումնական փաստաթղթերը կազմելու նպատակով: Այսինքն՝ խոսքը ուսումնական տարվա, շաբաթվա, դասի տևողության, մանկավարժության, հոգեբանության, ֆիզիոլոգիայի, հիգիենայի ու հարակից այլ գիտությունների և առաջավոր փորձի հիման վրա ժամանակի բյուջեի մասին է, ուսուցման ընթացքի կայուն բնույթը և ուսուցման վերջնական նպատակների հասնելն ապահովող մանկավարժական համակարգի կառուցվածքային բոլոր կողմերի ուսումնասիրման մասին:

Միջնակարգ պրոֆտեխնիկական ուսումնարանների ամեն մի շրջանավարտի հաջողությունը պետք է համարել սովետական առաջավոր բանվորին բնորոշ անձնական հատկանիշների ու պրոֆեսիոնալ ունակությունների ձևավորումը: Սովորողների գաղափարաքաղաքական և բարոյական դաստիարակության հետագա բարելավման նպատակով անհրաժեշտ է կազմակերպել պրոֆտեխկրթության խնդիրների կոմպլեքսային ուսումնասիրություն: Այս նպատակների իրականացման համար ՍՍՀՄ մանկավարժական գիտությունների ակադեմիայի պրոֆտեխմանկավարժության բաժինը մշակում է 1986—1990 թվականների գիտահետազոտական աշխատանքների համաձայնեցված պլան:

Խոսքը ոչ միայն կիրառական, այլև հեռանկարային հետազոտական ուսումնասիրությունների մասին է, որոնք տեսության մեջ և գործնականում կնշեն նոր ուղիներ բարձր որակավորում ունեցող բանվորների պատրաստման համար, կսահմանեն պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության և դաստիարակության օրինաչափությունները, որպեսզի մեր երիտասարդությանը նախապատրաստեն լավագույնս հասկանալու իրենց պարտականությունները հասարակության առաջ:

Բարձր որակավորում ունեցող բանվորների պատրաստման գիտական հիմնավորումը կնպաստի նրանց պրոֆեսիոնալ որակավորման նոր կառուցվածքի կոյավորմանը, կհանդիսանա պրոֆտեխնիկական կրթության հետագա զարգացման կարևոր խթան և պայմաններ կստեղծի բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման ոլորտում նոր վճռական տեղաշարժի համար:

Կուսակցական շինարարության

տեսություն և պրակտիկա

# ՄԱՍՍԱՅԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ՏԱՐԲԵՐ ԽԱՎԵՐԻ ՇՐՋԱՆՈՒՄ

**Հ. ԳԵՎՈՐԳՅԱՆ**
ՀԿԿ Կիրովականի Բաղկոմի պրոպագանդայի
և ագիտացիայի բաժնի վարիչ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների իրականացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը բացառիկ կարևոր նշանակություն ունի մեզ համար: Ոգևորիչ է այն գնահատականը, որ տրված է հանրապետության կուսակցական կազմակերպության աշխատանքին: Մենք միաժամանակ գիտակցում ենք, որ մեր առջև դրվում են մեծ, լուծում պահանջող նոր խնդիրներ:

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը, բազմաթիվ արմատական խնդիրների հետ միասին, պահանջեց գաղափարախոսական աշխատանքը կազմակերպել շերտավորված, հասնել այն բանին, որ այն ընդգրկի հասարակական կյանքի բոլոր կողմերը, բոլոր սոցիալական խմբերն ու ռեգիոնները, հասնի յուրաքանչյուր մարդու: Այն մեկ անգամ ևս հանրապետության կուսակցական քաղկոմ-շրջկոմների, սկզբնական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրում է կուսակցության ծրագրային որոշումների անվերապահ կենսագործման վրա:

Պլենումը խնդիր դրեց գաղափարախոսական աշխատանքի ծանրության կենտրոնը տեղափոխել աշխատավորական կոլեկտիվներ, որտեղ ոչ միայն նյութական արժեքներ են ստեղծվում, այլև մարդիկ զարգացնում են իրենց անձնական ունակությունները, ստեղծագործական ուժերը, դրսևորում են իրենց քաղաքացիական ակտիվությունը:

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի և Հայաստանի կուսակցական կազմակերպության վերաբերյալ Կենտկոմի որոշումները մարտական ծրագիր են նաև կուսակցության Կիրովականի քաղկոմի և սկզբնական կազմակերպությունների համար: Գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքն իր դերով ու նշանակությամբ դարձել է բոլոր կոմունիստների առաջնահերթ գործը: Մենք ելնում ենք կուսակցության այն դրույթից, որ գաղափարախոսական աշխատողների առջև կյանքը շատ խնդիրներ է դնում, բայց դրանցից գլխավորը եղել և մնում է մարդկանց կոմունիստական դաստիարակության հիմքի՝ մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորումը, որը կոմունիստներին դարձնում է քաղաքականապես գիտակից մարտիկներ, բարձրացնում է աշխատավորների հասարակական-քաղաքական ակտիվությունը:

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումների իրականացման շնորհիվ հարստացել է գաղափարախոսական գործունեության բովանդակությունը,

ընդլայնվել են այդ ոլորտի օղակների ընդգրկման շրջանակները, բարելավվել սոցիալական տարբեր խավերի հետ տարվող գաղափարադաստիարակչական աշխատանքը։

Քաղաքի արդյունաբերական ձեռնարկություններում լայն կերպով արմատավորվել է աշխատանքի կազմակերպման և վարձատրման բրիգադային եղանակը։ Բնականաբար, մենք պետք է մտածենք դրանցում մասսայական-քաղաքական աշխատանքի կազմակերպումը կատարելագործելու մասին։ Այն բրիգադներում, որոնցում կան կուսկազմակերպիչներ կամ կուսխմբավարներ, այդ պարտականությունը դրվում է նրանց վրա։ Իսկ ինչպե՞ս վարվել կոմունիստներ չունեցող բրիգադների հետ։ Պրակտիկան ինքը հուշեց ելքը. որոշվեց այդ աշխատանքը հանձնարարել բրիգադի անդամներից որևէ մեկին՝ քաղկազմակերպչին։ Վերջինս ընտրվում է անկուսակցական ակտիվի շրջանից, եթե, իհարկե, ունի կազմակերպչական և քաղաքական աշխատանքի փորձ ու հմտություն։ Նա իր տեսադաշտում է պահում բրիգադի յուրաքանչյուր անդամի, ագիտատորների, քաղինֆորմատորների ուժերով կազմակերպում կուսակցության և կառավարության որոշումների պարզաբանումը բրիգադի անդամների շրջանում, ապահովում նրանց ակտիվ մասնակցությունը տնտեսագիտական կրթության խմբակների և կոմունիստական աշխատանքի դպրոցների պարապմունքներին, կազմակերպվող միջոցառումներին, աշխատանք է տանում ետ մնացողների հետ, արտադրության առաջավորներին ներկայացնում խրախուսման և այլն։

Կուսքաղկոմը պլանավորած կարգով կազմակերպում է քաղկազմակերպիչների տեսական և մեթոդական ուսուցման գործը։ Քաղաքի 26 արդյունաբերական ձեռնարկությունների 1.359 բրիգադներից 1.332-ը աշխատում են նոր ձևով։ Դրանցում կան 709 քաղկազմակերպիչներ։ Բրիգադներում տարվող գաղափարադաստիարակչական աշխատանքի դրական փորձ է կուտակվել քիմմանրաթելի, ավտոգենային մեքենաշինության, ճշգրիտ հաստոցների, լուսատեխնիկական գործարաններում, Ստ. Շահումյանի անվան կարի արտադրական միավորումում։ Վերջինում ծնունդ առան ուշագրավ նախաձեռնություններ՝ «Որակը սկսվում է բրիգադում», «Աշխատանքի արտադրողականության բարձրացմանը՝ գաղափարախոսական ապահովում»։

Մեր ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ նախքան քաղկազմակերպիչների հաստատումը, բրիգադների աշխատողների 20—30 տոկոսը չէր մասնակցում կազմակերպվող զրույց-զեկուցումներին։ Այժմ պատկերը արմատապես փոխվել է. մասնակցում են բոլորը։

Քաղաքի գործարաններում կան շատ բրիգադներ, որոնց աշխատանքին տոն են տալիս կուսկազմակերպիչները։ Կահույքի արտադրամիավորումում հարդարման արտադրամասի փայլեցնողների բրիգադը ղեկավարում է կոմունիստ Աշոտ Հակոբյանը։ Նա նաև բրիգադի կուսկազմակերպիչն է։ Երբ առաջադրանք տրվեց աշխատանքի արտադրողականությունը արտապլանային կարգով բարձրացնել մեկ տոկոսով, իսկ արտադրանքի ինքնարժեքը լրացուցիչ իջեցնել կես տոկոսով, Աշոտ Հակոբյանը կատարեց հաշվարկներ, խոսեց բրիգադի բոլոր անդամների հետ։ Պարզվեց, որ կոլեկտիվը կարող է ավելին անել։ Եվ իրենց ժողովում բրիգադի անդամները որոշեցին առաջադրանքը կատարել կրկնակի։ Յուրաքանչյուր շաբաթ բրիգադում ամփոփում էին արդյունքները, կազմակերպիչը հոգ էր տանում, որպեսզի ոչ մեկը ետ չմնա։ Բոլորն օգնում էին միմյանց։ Բացատրական ողջ աշխատանքը նպատակաուղղվեց այդ կարևոր խնդրի լուծմանը։ Յուրաքանչյուրին պարզաբանվեց երկրի մասշտաբով այդ աշխատանքի կատարման նշանակությունը։ Որոշվեց նաև որակի հսկիչ անվանել նրանց բանվորական խիղճը։ Եվ ահա բրիգադը հաջողությամբ կատարեց առաջադրանքը՝ աշխատանքի արտադրողականությունը պլանից դուրս բարձրացվեց 2,4, արտադրանքի ինքնարժեքը իջեցվեց 0,9 տոկոսով։

Կուսկազմակերպչի միտքն անընդհատ որոնումների մեջ է, ստեղծագործա-



կան աշխատանքը նրա տարերքն է։ Հայրենական պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի 40-ամյակին նվիրված հայրենասիրական շարժմանը արձագանքեց ամբողջ բրիգադը։ Որոշվեց հնգամյակն ավարտել հաղթանակի օրը։ Բրիգադի անդամներ Պարգև Կարապետյանը, Սեդա Խաչիկյանը, Անուշ Վարդանյանը արտադրության առաջավորներ են, նրանք օգնում են բրիգադի մյուս անդամներին։ Կուսկազմակերպիչ Աշոտ Հակոբյանը նրանց օրինակով բարձրացնում է կոլեկտիվի անդամների պատասխանատվությունը, վստահություն ներշնչում իրենց ուժերի նկատմամբ։

Չնայած քիչ ժամանակ է անցել, բայց ձեռնարկությունների մի մասում բրիգադների քաղկազմակերպիչներն արդեն մեծ հեղինակություն են վայելում։ Նրանք կուսակցության խոսքը, տրված առաջադրանքները հասցնում են բրիգադների բոլոր անդամներին, նրանց հետ աշխատում կողք-կողքի և օրինակ ցույց տալիս։ Լուսատեխնիկական գործարանում լավ են ճանաչում հավաքման № 1 արտադրամասի հավաքողների առաջին բրիգադի քաղկազմակերպիչ Հասմիկ Մնացականյանին։ Նա մոտիկից գիտե բրիգադի 30 անդամներից յուրաքանչյուրի բնավորությունը, կենցաղը, ընտանիքի կազմը, եղել է մի քանիսի տներում, ծանոթ է նրանց տրամադրություններին։ Հասմիկը հոգատար է բոլորի նկատմամբ, աշխատանքի ընթացքում, ընդմիջումներին անկեղծ զրույցի է բռնվում աշխատողների հետ։ Նախաձեռնող է և լավ է պատկերացնում իր անելիքները։ Երբ առաջադրանք տրվեց 1985 թ. երկու օր աշխատել տնտեսված հումքի հաշվին, քաղկազմակերպիչը դիմեց կուսկոմիտեի քարտուղար Շալիկո Հակոբյանին և խնդրեց բրիգադի անդամների համար զրույց կազմակերպել այդ հարցի շուրջ։ Պոլիտեխնիկական ինստիտուտի մասնաճյուղի դասախոս Ալեքսանդր Ծատուրյանն անցկացրեց հետաքրքրական զրույց։ Բրիգադի անդամները գոհ մնացին։

Հասմիկ Մնացականյանը մշտապես դիմում է ագիտատորների և զեկուցողների օգնությանը։ Նա միաժամանակ գիտի, թե բրիգադի անդամներն ինչպես են մասնակցում տնտեսագիտական կրթության համակարգի տարբեր օղակների պարապմունքներին, սերտ կապ է պահպանում պրոպագանդիստների հետ։ Քաղկազմակերպիչն ունի հաշվառման մատյան, որտեղ գրանցում է բրիգադի անդամների մասնակցությունը կուլտուր-մասսայական միջոցառումներին։ Դա բարձրացնում է նրանց պատասխանատվությունն ու ակտիվությունը։ Հ. Մնացականյանը խորապես համոզվել է, որ կազմակերպվող զրույց-զեկուցումներն ու կուլտուր-մասսայական միջոցառումները բարձրացնում են աշխատողների բարոյական ոգին, աշխատանքային ակտիվությունը։ Բրիգադը մշտապես գերակատարում է պլանները, առաջին ներկայացմամբ արտադրանքի հանձնման ցուցանիշը հասցրել է 98 տոկոսի, այն էլ առանց տեխնիկական հսկողության։ Նախատեսվում է քաղկոմի բյուրոյում քննարկել քաղկազմակերպիչ Հասմիկ Մնացականյանի հաշվետվությունը կատարած աշխատանքի ու փորձի մասին։

Մեզ համար մեծ պատիվ է ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումում ընկեր Կ. Ս. Դեմիրճյանի տված այն գնահատականը, որ մեր քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմակերպությունները աշխատանքի կազմակերպման և խթանման բրիգադային ձևերի պայմաններում կուտակել են գաղափարադաստիարակչական աշխատանքի արդյունավետության բարձրացման դրական փորձ։ Դա միաժամանակ մեր առջև խնդիր է դնում ավելի բարելավել ու կատարելագործել այդ աշխատանքը, այն բարձրացնել կուսակցության արդի պահանջների մակարդակին։

Պարտավորեցնող է նաև ըստ բնակության վայրի մեր քաղաքում տարվող դաստիարակչական աշխատանքի արժեքավորումը ընկ. Դեմիրճյանի զեկուցման մեջ։ Հայտնի է, որ ինչպես ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում, այնպես էլ Հայաստանի կուսակցական կազմակերպության վերաբերյալ Կենտկոմի որոշմամբ էապես կարևորվեց ըստ բնակության վայրի տարվող մասսայական-քաղաքական աշխատանքը։ Մենք այն համարում ենք կոլեկտիվներում տարվող գաղափարադաստիարակչական աշխատանքի շարունակությունը։

Այստեղ էական են կազմակերպական ճիշտ կառուցվածքը, ըստ բնակության վայրի տարվող գաղափարադաստիարակչական աշխատանքի կուռ համակարգի ստեղծումը։ Դրա նպատակն է՝ թաղամասերի բնակիչներին, հատկապես տնային տնտեսուհիներին, աշխատավորական կոլեկտիվների հետ կապ չունեցող անձանց հասցնել կուսակցության խոսքը։ Հունիսյան պլենումից հետո արմատապես վերակառուցեցինք այդ աշխատանքը։ Այժմ այն դարձել է մշտական և պլանաչափ։

Քաղկոմի գաղափարախոսական հանձնաժողովում ստեղծել ենք ըստ բնակության վայրի տարվող քաղաքական-մասսայական աշխատանքի սեկտոր, որի կազմում ընդգրկվել են քաղկոմի ապարատի պատասխանատու աշխատողներ, ՀԼԿԵՄ քաղկոմի քարտուղարը, քաղսովետի անչափահասների հանձնաժողովի նախագահը, բնակարանային տնտեսության արտադրական վարչության պետը, ֆիզկուլտուրայի և սպորտի քաղաքային կոմիտեի նախագահը, կուսկոմիտեների քարտուղարներ և աշխատանքի վետերաններ։

Սեկտորը կոորդինացնում է տեղամասային հանձնաժողովների գործունեությունը և կոնկրետ օգնություն ցույց տալիս նրանց։ Քաղաքը բաժանված է 24 միկրոշրջանների, որոնց կենտրոններն են հանրակրթական դպրոցները։ Դպրոցների և արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմակերպությունները կազմակերպում են ողջ գաղափարադաստիարակչական աշխատանքը թաղամասերում։ Դպրոցի արտադասարանական և արտադպրոցական աշխատանքի գծով դիրեկտորի տեղակալը ղեկավարում է տեղամասային հանձնաժողովի գործերը։ Վերջինս ունի 4—5 հանձնաժողով՝ քաղդաստիարակչական, հասարակական կարգի պահպանման, բարեկարգման, անչափահասների հետ տարվող աշխատանքի, աթեիստական դաստիարակության հարցերի գծով։ Այդ հանձնաժողովները սերտ կապի մեջ են բնակիչների հետ, գիտեն նրանց կազմը, նախասիրությունները, տրամադրությունները, հասարակական կարգը խանգարելու հակում ունեցողներին։

Քաղկոմի գաղափարախոսական հանձնաժողովի ըստ բնակության վայրի տարվող աշխատանքի սեկտորի տարեկան պլանին համապատասխան՝ բնակիչների համար կազմակերպվում են զեկուցումներ, հանդիպումներ քաղաքի ղեկավար աշխատողների հետ, կինոլեկտորիումներ։ Քաղկոմը և սկզբնական կուսկազմակերպություններն սկսել են քննարկել ըստ բնակության վայրի իրականացվող գաղափարադաստիարակչական աշխատանքի հարցերը։ Կազմակերպական ճիշտ կառուցվածքը հնարավորություն է ընձեռում՝ կոորդինացնելու գաղափարախոսական բոլոր հիմնարկությունների գործունեությունը։

Դրական աշխատանքի լավ փորձ է կուտակել հատկապես № 22 միկրոշրջանի տեղամասային խորհուրդը (նախագահ՝ Սիրուշ Ղուկասյան)։ Խորհրդի կազմում ներգրավվել են դպրոցի, բնակշահագործման տեղամասի, ներքին գործերի բաժնի փորձառու ընկերներ։ Այստեղ լավ են օգտագործում նաև վետերանների ուժերը։ Տեղամասային խորհրդի անդամներն ուսումնասիրել են թաղամասի բնակիչների կազմը։ Պլանավորված կարգով նրանց համար կազմակերպվում են զրույց-զեկուցումներ, այդ թվում և խնայողության, անչափահասների հետ տարվող աշխատանքի ձևերին ու մեթոդներին նվիրված թեմաներով։ Զեկուցումները կարդում են քաղկոմի դասախոսական խմբի անդամները։ Խորհուրդը կազմակերպել է նաև սպասարկման ոլորտի, իրավապահական մարմինների ղեկավարների հանդիպումներ բնակիչների հետ։

Հանդիպումների, զրույց-զեկուցումների ժամանակ № 22 միկրոշրջանի բնակիչներն առաջ են քաշում զանազան հարցեր, անում դիտողություններ ու առաջարկություններ։ Դրանք հաշվի են առնվում ու լուծվում։ Բնակիչներ Սերյոժա Աբմաքչյանը, Արարատ Ջրաղացպանյանը, Արմենակ Պապիկյանը, Մկրտիչ Ժամհարյանը և մյուսները ճիշտ առաջարկություններով օգնեցին լուծելու մի շարք կարևոր հարցեր։ Այսպես, օրինակ, ահազանգ էր ստացվել, որ քաղաքի ծայրամասերում, այդ թվում և իրենց թաղամասում, չի կարգավորված առևտուրը, խիստ ցածրորակ է թխվող լավաշը, բնակելի շենքերի մի մասը տարիներ շարունակ չի նորոգվում, արդյունավետ պայքար չի տարվում



սպեկուլյացիայի դեմ։ Նրանք սխալ են համարում Վանաձորում այնքա՜ն շատ խորտկարաններ ու ռեստորաններ բացելը, առաջարկում են քաղաքում ստեղծել օղակաձև երթուղի։

Տեղամասային խորհուրդը հետևողականորեն զբաղվեց այդ դիտողություններին ու առաջարկություններին ընթացք տալու հարցերով, այդ նպատակով մշտական կապ հաստատեց քաղսովետի գործկոմի համապատասխան բաժինների հետ։ Անցած տարի հարցերի մի մասը լուծվեց, մյուս մասը լուծման ընթացքի մեջ է։ Քաղաքային «Կայծ» թերթը գրեց, թե ինչու լավաշը ցածրորակ է։ Որոշվել է Վանաձորի տարածքում ընդլայնել հանգստի գոտիները, խստիվ արգելվել է զանազան ապրանքների կամայական վաճառքը։ Գովելի է, որ հերթական հանդիպման ժամանակ տեղամասային խորհուրդը բնակիչներին տեղյակ է պահում հարցերի լուծման մասին։

Ըստ բնակության վայրի տարվող աշխատանքում օգտագործում ենք նաև դեպուտատների ուժերը։ Կուսկազմակերպություններն օգնում են նրանց լինելու միկրոշրջաններում, հանդիպում ունենալու, անկեղծ զրուցելու բնակիչների հետ, իմանալու նրանց կենցաղային հոգսերն ու կարիքները, դրանց մասին տեղյակ պահելու քաղսովետի գործկոմին։ Դեպուտատներն զբաղվում են անչափահասների դաստիարակության հարցերով, մոբիլիզացնում բնակիչներին՝ մաքուր պահելու բակերն ու փողոցները, ակտիվորեն մասնակցելու քաղաքի կանաչապատմանը։

Քաղսովետի գործկոմը մեծ կարևորություն է տալիս կուլտուրայի տների ու ակումբների, գրադարանների ու կինոթատրոնների ճիշտ տեղաբաշխմանը։ Գործկոմը կոնկրետ աշխատանք է տանում, որպեսզի ամեն մեկի համար պարզ լինի, որ շենքը, բակը, միկրոշրջանը մեր սոցիալական կյանքի կարևորագույն տարրերն են։

Կուսքաղկոմը և քաղսովետի գործկոմը ձգտում են բնակչության գաղափարադաստիարակչական աշխատանքը ճիշտ զուգակցել սոցիալական պրոբլեմների լուծման հետ։ Որոշակի աշխատանք է կատարվել փողոցների բարեկարգման, կանաչապատման, շենքերի տաքացման, թաղամասերում մսուր-մանկապարտեզներ, դպրոցներ, առևտրի օբյեկտներ բացելու ասպարեզում։

Առևտրի և կենցաղային սպասարկման բնագավառում տեղ գտած թերությունները ,անշուշտ, բացասաբար են անդրադառնում մարդկանց տրամադրության, նրանց արտադրական և հասարակական ակտիվության վրա։ Նկատի ունենալով այդ հանգամանքը՝ մենք կազմակերպում ենք զանազան բնագավառների ղեկավար աշխատողների հանդիպումներ թաղամասերում և աշխատավորական կոլեկտիվներում։ Դրանք անցկացվում են յուրաքանչյուր եռամսյակ, ղեկավարները պատասխանում են բնակիչների հարցերին, հաշվի առնում առաջարկությունները և հաջորդ հանդիպման ժամանակ տեղյակ պահում կատարված աշխատանքի մասին։ Հանդիպումների այս ձևը բարձրացնում է ղեկավար աշխատողների պատասխանատվությունը, զարգացնում բնակչության նախաձեռնությունը, նպաստում մասսաների հետ կապի ամրապնդմանը։

Պատահել է, որ առանձին միկրոշրջաններում թուլացրել են այդ աշխատանքը, երկար ժամանակ չեն կազմակերպել հանդիպումներ, բնակչությանը ինֆորմացիա չի տրվել գործերի վիճակի մասին։ Հետևանքը եղել է այն, որ ավելացել են տարբեր հարցերի մասին բողոքները։

Բնակչության տարբեր կատեգորիաների հետ տարվող աշխատանքում գաղափարադաստիարակչական աշխատանքի կարևոր ձև է միասնական քաղօրերի անցկացումը։ Չնայած որ մենք այն ձեռնարկել ենք 1980 թվականից, սակայն պրակտիկայում լիովին արմատավորեցինք միայն ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումից հետո։ Քաղաքի կուսակցական, սովետական և տնտեսական բոլոր ղեկավարներն ակտիվորեն մասնակցում են միասնական քաղօրերին, մեր կազմած գրաֆիկին համապատասխան հանդիպում աշխատավորների հետ։ Միասնական քաղօրերի ժամանակ քաղաքային կոմիտեն հանդիպումներ է կազմակերպում նաև թաղամասերում, յուրաքանչյուր միկրոշրջանում։ Այս

նառումով աշխատանքի դրական փորձ է կուտակվել № 13 միկրոշրջանում, որը գտնվում է քաղաքի նորակառույց մասում: Միասնական քաղօրերից մեկը նվիրված էր մեր կուսակցության տնտեսական քաղաքականությանը, խնայողության հարցերին: Այն անցկացրեց քաղսովետի գործկոմի նախագահի տեղակալ Ա. Այվազյանը Թաղամասի դպրոցի դահլիճում:

Բնակիչներն ակտիվորեն քննարկեցին հարցերը, արեցին արժեքավոր առաջարկություններ: Նրանք նշեցին, որ Թաղամասում հացի վաճառքը կանոնավոր չէ, հաճախակի խափանվում է ջրամատակարարումը, մարդիկ հարկադրված շատ հաց են գնում, անտեղի ջուր հավաքում և հետո թափում: Նշում էին, որ եթե մատակարարումը հստակ լինի, ապա ավելի քիչ հաց և ջուր կօգտագործվի: Կոնկրետ օրինակներ բերվեցին բնակելի շենքերի ջեռուցման համակարգի անկանոն գործելու վերաբերյալ, ջեռուցման խողովակների որոշ հատվածներ մեկուսացված չեն և այդ պատճառով ջերմության կորուստ է տրվում: Կոոպերատիվ շենքերի բնակիչներն ասացին, որ այդ շենքերը մի տեսակ դուրս են տեսադաշտից և ապտիճանաբար փչանում են: Առաջարկությունները ու դիտողությունները խմբավորվեցին և ուղարկվեցին քաղաքի համապատասխան կազմակերպություններին: Հարցերի մեծ մասի լուծմամբ զբաղվեց քաղսովետի գործկոմը: Ա. Այվազյանն անձամբ հետաքրքրվեց այդ գործով և հետագայում ինֆորմացիա տվեց բնակիչներին հարցերի լուծման ընթացքի մասին:

Ըստ բնակության վայրի գաղափարախոսական աշխատանք կազմակերպելու համար լայնորեն օգտագործում ենք քաղաքացիների նպատակային ժողովները: Դրանք հրավիրվում են, երբ անհրաժեշտ է լինում միավորել նրանց ուժերը՝ Թաղամասը բարեկարգելու, կանաչապատելու և մաքրելու համար: Նրանց մոբիլիզացնում ենք ոչ միայն կատարելու այդ աշխատանքները, այլև պահպանելու, խնամելու իրենց ձեռքերով ստեղծածը:

Մարդկանց հետ շփվելու արդյունավետ ձև է «Բաց նամակի օրերի» անցկացումը աշխատավորական կոլեկտիվներում և միկրոշրջաններում: Առաջին անգամ այդ միջոցառումը կազմակերպեցինք քիմիական, լուսատեխնիկական, «Ավտոմատիկա» գործարաններում և կարի արտադրական միավորումում: Նախապես փակցվեցին հայտարարություններ բաց նամակի օրվա անցկացման մասին, մուտքերի մոտ ամրացվեցին փոստարկղներ: Քաղաքային «Կայծ» թերթը և ռադիոն գրեցին ու հաղորդեցին այդ մասին: Ստացվեց 326 նամակ, որոնց կեսից ավելին շոշափում էր հասարակական կարևոր նշանակություն ունեցող խնդիրներ: Դրանք վերաբերում էին գործարաններում հաստոցային պարկի արդյունավետ օգտագործմանը, քաղաքի գլխավոր հատակագծին, մշակույթի օջախների ճիշտ տեղադրմանը, նորակառույց Թաղամասերը կենցաղային օբյեկտներով, շենքերը՝ ջրով ապահովելուն և այլն: Նամակներում բարձրացված հարցերին պատասխանեցին հանրապետության պետպլանի, առևտրի, բնակչության կենցաղային սպասարկման, արդարադատության մինիստրությունների, պետշինի պատասխանատու աշխատողները, մեր քաղաքի ղեկավարները: Քաղկոմը և քաղսովետի գործկոմը վերահսկողություն սահմանեցին, որպեսզի առաջ քաշված հարցերը անպայմանորեն ընթացք ստանան: Ի դեպ, դրանց մեծ մասը ժամանակին դրականորեն լուծվեց:

Հետաքրքիր անցավ № 17 միկրոշրջանում անցկացված բաց նամակի օրը: Այն նախապատրաստվեց շուրջ մեկ ամիս: Բնակիչների հետ հանդիպեցին սպասարկման ոլորտի ղեկավարները: Նրանք ոչ միայն պատասխանեցին հարցերին, այլև նշեցին, որ գոյություն ունեցող թերությունների վերացման գործում անչափ մեծ է բնակիչների դերը: Բաց նամակի օրվան մասնակցում էին նաև զանազան ծառայությունների ղեկավարներ: Նրանց տրվեցին կոնկրետ հանձնարարություններ: Բուժօբյեկտների կոլեկտիվների ժողովներում քննարկվեց բժիշկների պարտականությունների մասին հարց, հրավիրվեց գլխավոր բժիշկների խորհրդակցություն: Վերանայվեց ջրի մատակարարման գրաֆիկը և սահմանվեց խիստ հսկողություն: Այժմ Թաղամասում ջուրն ստանում են սահմանված գրաֆիկի համաձայն: Վերանայվեց նամակատարների կազմը,



լավագույններից երկուսը ամրացվեցին № 17 միկրոշրջանին: Այլևս բողոքներ չեն լինում: Թաղամասում ավելացվեց ավտոմատ հեռախոսների քանակը:

Լավ արդյունք է տալիս, երբ քաղաքի ղեկավարներն ընդունելությունը կազմակերպում են Թաղամասերում, անմիջականորեն աշխատավորների բնակության վայրում, մոտիկից շփվում նրանց հետ, պատասխանում նրանց բարձրացրած հարցերին:

Բնակիչների հետ կապի մեկ ուրիշ ձև է, երբ իրավապահպան մարմինների ղեկավարները հաշվետվություններով հանդես են գալիս բնակիչների առջև, նրանց համար անցկացնում զրույց-զեկուցումներ: Մեր նշանաբանն է՝ բոլորին իրավական գիտելիքներ: Քաղկոմն ուղղություն է տալիս իրավական գիտելիքների պրոպագանդման քաղաքային կոորդինացիոն մեթոդական խորհրդի գործունեությանը: Այդ գործում ընդգրկվում են իրավապահպան մարմինների գրեթե բոլոր աշխատողները:

Անչափահասների հետ տարվող աշխատանքին մենք մեծ նշանակություն ենք տալիս: Վերջին տարիներին քաղաքի տարբեր Թաղամասերում ստեղծվել են սպորտային և մանկական ակումբներ, որտեղ ընդգրկվել են մեծ թվով անչափահասներ: Քաղկոմն ուսումնասիրեց Թաղամասերում անչափահասների հետ տարվող աշխատանքի վիճակը և այդ հարցը քննարկեց բյուրոյի նիստում: Որոշումը վերցված է հսկողության տակ: Քաղաքի տարբեր մասերում ստեղծվելու են կուլտուր-մասսայական համալիրներ, որոնք կկոորդինացնեն ակումբների, մարզական օբյեկտների, գրադարանների գործունեությունը՝ անկախ դրանց գերատեսչական պատկանելությունից: Այս համալիրներում կուժեղացվի նաև անչափահասների հետ տարվող աշխատանքը:

Նշված միջոցառումներն անցկացնելիս քաղկոմը ղեկավարվում է ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի այն պահանջով, որ գաղափարախոսական գործունեության արդյունավետությունն ապահովելու համար պետք է ունենալ հետադարձ կապի պարզ գործող մեխանիզմ: Բոլոր հանդիպումների ժամանակ բնակիչների տարբեր խավերի կողմից բարձրացված հարցերը ամփոփում ենք և ուղարկում համապատասխան կազմակերպություններին՝ ընթացք տալու: Հարցերի լուծման մասին ստանում ենք ինֆորմացիա և տեղյակ պահում բնակիչներին: Քաղկոմի բյուրոն անցած տարվա հունիսին քննարկեց «Դասախոսությունների, հանդիպումների, միասնական քաղօրերի ժամանակ արված դիտողությունների, առաջարկությունների և բարձրացված հարցերի կենսագործման ընթացքի մասին» հարցը: Որոշվեց ուժեղացնել մշտական հսկողությունը ձեռնարկված միջոցների կենսագործման նկատմամբ և անդրադառնալ արդյունքներին:

Բնակչության տարբեր խավերի հետ տարվող կազմակերպչական և քաղաքական աշխատանքի շնորհիվ հնարավորություն է ստեղծվում ավելի լավ իմանալ նրանց տրամադրությունները, պահանջները, հուզող հարցերը: Միջոցառումներն ու հանդիպումներն օգնում են մեզ՝ խորամուխ լինելու տրանսպորտի, առևտրի, կենցաղի, կադրային քաղաքականության հարցերում, վերացնել նեղ տեղերը:

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը նշեց, որ չի կարելի թուլացնել աշխատանքը բնակչության յուրահատուկ խմբի՝ հավատացյալների հետ, քանի որ դեռևս կրոնի ազդեցության տակ է մարդկանց մի և, պետք է ասել, ոչ այնքան էլ փոքր մասը: Ինչ խոսք, կոմունիստները հետևողական աթեիստներ են, սակայն նրանք իրենց աշխարհայացքը պրոպագանդում են համոզման միջոցով: Այս սկզբունքից ելնելով էլ կազմակերպում ենք աթեիստական աշխատանքը:

Քաղկոմը մեծ տեղ է հատկացնում սոցիալիստական նոր ծեսերի արմատավորմանը: Մեզ մոտ դրանք են՝ երգի, ծաղկի տոները, Լոռվա ձմեռը, ուսանողական փառատոները, մանկական երգի տոնահանդեսը, վետերանների հետ հանդիպումները, բրիգադավարների, արտադրության առաջավորների հավաքները, երեք սերունդների ներկայացուցիչների հանդիպումները, բանվորի օրը, գիտելիքների օրը: Գարնանը կանցկացվի «Աշխատանքի տոն» անդրանիկ

միջոցառումը։ Ուշադրություն ենք նվիրում ամուսնությունների հանդիսավոր գրանցմանը։ Արդեն ավանդույթ է դարձել, որ այդ արարողությունից հետո նորապսակները այցելում են Հայրենական մեծ պատերազմում զոհվածների հուշարձանին և ծաղիկներ դնում։

Դրական արդյունք է տալիս քաղաքի կինոթատրոններում գիտաաթեիստական թեմաներով կինոնկարների ցուցադրումը։ Քաղաքի դպրոցներում ստեղծվել են ժողհամալսարաններ ծնողների համար, որտեղ նրանք ուսումնասիրում են նաև աթեիստական դաստիարակության հարցերը։ Գործնական քայլեր են արվում՝ վերացնելու հուղարկավորման արարողությունների ժամանակ նկատվող ավելորդությունները։

Քաղաքում կան ուսանողական և բանվորական տասը հանրակացարաններ, որտեղ ապրում է 1.500 մարդ։ Առանձին աշխատանք է տարվում դրանցում բնակվողների հետ։ Ուշադրության արժանի է քիմիական գործարանի հանրակացարանային խորհրդի դրական աշխատանքը։ Բնակվողների ուժերով խորհուրդն ապահովում է սանիտարական նորմալ վիճակ, մշտապես թարմացնում է դիտողական ագիտացիան կարևոր իրադարձությունների մասին։ Գործում է ռադիոհանգույցը։ Այս ամենը նպաստում է հանրակացարանում պատշաճ կարգուկանոնի հաստատմանը։

Չնայած կատարված դրական աշխատանքին, քաղաքի բնակչության տարբեր խավերի հետ տարվող գաղափարախոսական աշխատանքում կան շատ թերություններ ու բացթողումներ։ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի այն պահանջը, որ հարկավոր է հասնել յուրաքանչյուր մարդու, գաղափարախոսական ազդեցության շրջանակներում ընդգրկել բոլորին, դեռևս մեզ չի հաջողվել լրիվին կատարել։ Մենք ոչ միշտ ենք հետևողական աշխատանք տանում բնակչության բոլոր խավերի հետ, երբեմն մի խմբի հետ աշխատանքն ուժեղացնում, մյուս խմբի հետ թուլացնում ենք։ Անցկացվող միջոցառումները ոչ միշտ են լինում արդյունավետ։ Պատահում է, որ բնակիչների բարձրացրած առանձին հարցեր ընթացք չեն ստանում կամ դրանց լուծումը խիստ ձգձգվում է, որոնք առաջ են բերում բնակիչների իրավացի դժգոհությունը։ Մեզ դեռևս չի հաջողվել վճռականորեն վերակառուցել երիտասարդության հետ տարվող աշխատանքը։

Վերջերս կուսքաղկոմի պլենումը գործարար մթնոլորտում քննարկեց Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ հունիսյան պլենումի որոշումների կատարման մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման առնչությամբ քաղաքի կուսկազմակերպության խնդիրները։ Պլենումը գործնական միջոցառումներ մշակեց գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական գործունեությունն աշխուժացնելու համար։ Առանձնահատուկ ուշադրություն նվիրվեց բնակչության տարբեր խավերի հետ տարվող աշխատանքի հետագա բարելավման հարցերին, այդ ասպարեզում տեղ գտած թերությունների վերացմանը։

Արտադրական կոլեկտիվների, քաղաքի բոլոր աշխատավորների համար ոգևորության նոր աղբյուր է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի, ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշը, որին մեր քաղաքն արժանացել է 1984 թ. ծավալված համամիութենական սոցիալիստական մրցությունում հաղթելու համար։ Այդ բարձր պարգևը մեր մարդկանց կմղի աշխատանքային նոր խիզախումների։ Նրանք հաջողությամբ կփակեն հնգամյակի ավարտական տարին և հնգամյակն ամբողջությամբ վերցրած, արտադրական նվաճումներով կդիմավորեն կուսակցության հերթական XXVII համագումարը, իրենց ավանդը կներդնեն երկրի տնտեսական հզորության հետագա ամրապնդման գործում։



# ԸՆԴԴԵՄ ՀԱԿԱՖԱՇԻՍՏԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԴԵՐԻ ԿԵՂԾԱՐԱՐՆԵՐԻ

**Մ. ԱՌԱՔԵԼՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

Սովետական բազմազգ ժողովուրդը, համայն աշխարհի պրոգրեսիվ ուժերը նշում են ֆաշիստական ագրեսորների նկատմամբ տարած պատմական հաղթանակի 40-ամյակը։ Ֆաշիստական Գերմանիայի սանձազերծած երկրորդ համաշխարհային պատերազմը կրում էր շեշտված դասակարգային բնույթ։ Այն սոցիալիզմի և իմպերիալիզմի հարվածային ուժի՝ ֆաշիզմի միջև պինված հակամարտություն էր։ Նրա ելքից էին կախված սոցիալիզմի բախտը, առաջադեմ մարդկության ու համաշխարհային քաղաքակրթության ապագան։ Համաշխարհային տիրապետության ձգտող ֆաշիստական ագրեսորները վերջնականապես ջախջախվեցին, մարդկությունն ազատագրվեց ֆաշիստական մղձավանջից։

Հայտնի է, որ երկրորդ աշխարհամարտի պատմության վերաբերյալ հրատարակվել է վիթխարի գրականություն՝ հազարավոր պաշտոնական հրապարակումներ, մենագրություններ, գիտահանրամատչելի գրքեր, փաստաթղթերի ժողովածուներ, պատերազմի մասնակիցների հուշագրություններ, գիտական կոնֆերանսների նյութեր և այլն։ Չնայած պատերազմի ավարտման օրից անցել են շատ տարիներ, տակավին շարունակում է աճել այդ մասին հրատարակվող գրականության հոսքը։

Երկրորդ համաշխարհային պատերազմի պատմությանն ու պրոբլեմներին նվիրված գրականությունն իր սոցիալ-դասակարգային էությամբ ու քաղաքական միտումով բաժանվում է որակապես իրարից տարբերվող մարքսիստական ու բուրժուական ըմբռնման։ Մարքսիստ պատմաբանները, ելակետ ունենալով դիալեկտիկամատերիալիստական մեթոդաբանությունը, փաստական տվյալների վերլուծության ու ընդհանրացման հիման վրա օբյեկտիվորեն են գնահատում պատերազմի իրադարձությունները, ճիշտ եզրակացություններ հանգում դրա ընթացքի, հետևանքների ու դասերի վերաբերյալ։

Բուրժուական պատմագրության ներկայացուցիչները, ելնելով սուբյեկտիվ-գաղափարախոսական մեթոդաբանության դիրքերից, իրենց աշխատություններում խեղաթյուրում են պատերազմի շատ փաստերի և իրադարձությունների իսկական իմաստը, նենգափոխում նրա պատմությունը, հանգում միտումնավոր եզրակացությունների։ Նրանք ձգտում են ժխտել ՍՍՀՄ-ի վճռական դերը հաղթանակի գործում, խեղաթյուրել սովետական բանակի ազատագրական առաքելությունը հակաֆաշիստական պատերազմում, նպատակ ունենալով բովանդակ մարդկության աչքում նսեմացնել մեր երկրի ու նրա բանակի նկատմամբ եղած հարգանքն ու վստահությունը։ Այդ նպատակին հասնելու համար օգտագործում են ամենախարդախ մեթոդներն ու միջոցները՝

ռական իրադարձությունները տեղի են ունեցել ոչ թե սովետական բանակի գործողությունների գոտում, այլ այնտեղ, որտեղ գործում էին Անգլիայի ու ԱՄՆ-ի զորքերը։

Բուրժուական այլ հեղինակներ պնդում են, թե 1944 թվականի ամռանը հենց դաշնակից զորքերի Նորմանդիա ներխուժումն էր, որ գերմանացիներին ստիպեց զենքը վայր դնել, թե երկրորդ ճակատի բացումից հետո պայքարի հիմնական ծանրությունը Եվրոպայում ընկավ ԱՄՆ-ի ու Անգլիայի զինված ուժերի վրա։ Այսպես, գեներալ Դ. Մարշալը՝ ամերիկյան բանակի շտաբի նախկին պետը, գրել է, թե «Համաշխարհային պատերազմում հաղթանակը կախված էր «Օվերլորդ» օպերացիայի հաջող անցկացումից» (История Великой Отечественной войны Советского Союза 1941—1945, т. 6, М., 1965, стр. 23)։ Լ. Հարտը Անուղղակի գործողությունների ստրատեգիա գրքում բազմիցս շեշտում է, որ Նորմանդիայում դաշնակից զորքերի ափհանումը ֆաշիստական բլոկի դեմ մղված պատերազմի վճռական իրադարձությունն էր։ Արևմտագերմանացի պատմաբան Վ. Հաուպտը պնդում է, թե այդ օպերացիան «Երրորդ ռայխի վախճանի սկիզբն էր» (Е. Н. Кульков, О. А. Ржешевский, И. А. Чельшев. Правда и ложь о второй мировой войне. М., 1983, стр. 182)։

Բուրժուական որոշ հեղինակներ առաջ են քաշում այն վարկածը, թե պատերազմում վճռական դեր է խաղացել Գերմանիայի ստրատեգիական ռմբակոծությունը անգլո-ամերիկյան ավիացիայի կողմից, որի հետևանքով, իբր, հակառակորդը զրկվել է պատերազմը շարունակելու նյութատեխնիկական բազայից։ Օրինակ, Բ. Բրոդին գրել է, թե անգլո-ամերիկյան ավիացիայի ռմբակոծությունների հետևանքով Գերմանիայի ռազմական էկոնոմիկան հասել էր աղետի եզրին (տե՛ս Б. Броди. «Стратегия и век ракетного оружия». Пер. с англ. М., 1961, стр. 133)։ Այդ մասին է գրում նաև անգլիացի պատմաբան Պ. Յանգը, պնդելով, թե «դաշնակից ավիացիայի հարվածները Գերմանիային կանգնեցրել են աղետի եզրին» (В. А. Секистов, указ. соч., стр. 30)։ Անգլիացի պատմաբան Գ. Գրեյի կարծիքով 1944 թվականի կեսերին ֆաշիստական ռայխն օդային հարձակման հետևանքով արդեն շնչահեղձ ու կաթվածահար էր եղել և չէր կարողանում շարունակել պատերազմը (Правда и ложь... стр. 178)։

Կեղծարարների շարքում կան և այնպիսինները, ովքեր, փորձելով ստվեր գցել սովետական զորքերի մարտական բարձր վարպետության վրա, հայտարարում են, որ սովետա-գերմանական խոշորագույն ճակատամարտերում կարմիր բանակի հաղթանակները և ֆաշիստական զորքերի պարտությունը պայմանավորված էին միայն սովետական զորքերի թվական մեծ գերազանցությամբ։ Այսպես, Լ. Հարտը պնդում է, թե սովետական զորքերը գերմանականին գերազանցում էին 12 անգամ, Տիպելսկիրխն այդ թիվը հասցնում է 20-ի և այլն։

Արևմտյան զինվորական պատմաբաններից մի քանիսը (Ֆուլլեր, Կրայգ, Դյուպուա և ուրիշներ) հասնում են անհեթեթ պնդումների, թե իբր մարտի դաշտերում հակառակորդին հաղթում է ոչ թե կարմիր բանակը, այլ «գեներալ ձմեռը», «գեներալ ընդարձակ տարածությունը», «գեներալ ցեխը» և այլն, այսինքն՝ զուտ կլիմայական, աշխարհագրական գործոնները, որոնք, նրանց գնահատմամբ, «ռուսների մշտնջենական դաշնակիցներն են»։ 1977 թվականին ԱՄՆ-ում լույս տեսած Պատերազմ Արևելքում կոլեկտիվ մենագրությունում այդ կարծիքը ձևակերպված է հետևյալ կերպ. «Սովետական Միության կլիման գլխավոր դեր էր խաղում պատերազմում։ Դա հանգուցային գործոն էր... Սովետների կողմից էին գեներալ Ձմեռը և գեներալ Ցեխը» (Правда и ложь... стр. 112)։

Բուրժուական շատ հեղինակներ հայտարարում են, թե «ամերիկյան տնտեսական օգնությունը Ռուսաստանի փրկության հիմնական գործոնն էր» (Против фальсификаторов истории второй мировой войны. М.,



1964, стр. 318), թե սովետական զորքերի հաղթանակներում վճռական դեր էին խաղում ամերիկյան ռազմական մատակարարումներն ըստ լենդ-լիզի, թե իբր առանց այդ օգնության Սովետական Միությունը կզրկվեր զենքի, սպառազինության, հանդերձանքի ու ստրատեգիական նյութերի ամերիկյան մատակարարումներից և ամբողջովին տանուլ կտար վճռական մարտական գործողությունները։ Այսպես, օրինակ, ամերիկացի պատմաբան Գ. Պետչերը առանց որևէ ապացույցների պնդում է, թե անհնար կլինեին սովետական բանակի հաջողությունները, եթե չլիներ ամերիկյան առատ օգնությունը (տե՛ս (Правда и ложь... стр. 204)։

Իսկ ինչ վերաբերում է միլիտարիստական Ճապոնիայի դեմ մղված պատերազմին, ապա բուրժուական պատմաբանները (հատկապես՝ ամերիկյան) ձգնում են ամբողջովին ժխտել Սովետական Միության ներդրումը հեռավորարևելյան ագրեսորի ջախջախման գործում, հայտարարելով, թե դա զուտ ամերիկյան պատերազմ էր, թե Սովետական Միությունը ոչ մի ազդեցություն չի ունեցել Ասիայում ծավալված պատերազմական գործողությունների ընթացքի վրա, ճամարտակում են, թե իբր հակաճապոնական պատերազմի մեջ ՍՍՀՄ-ի մտնելն ընդամենը «հարված էր մահացողին»։ Այսպես, Հ. Տրումենը, տակավին ԱՄՆ-ի պրեզիդենտ եղած ժամանակ, անառարկելի տոնով հայտարարել է, թե ռուսները ոչ մի ներդրում չունեն Ճապոնիայի դեմ մղված պատերազմում։ Ջ. Բոլենը պնդում է, թե Ճապոնիայի դեմ սովետական զորքերի հանդես գալը բացարձակապես հարկավոր չէր։ Իսկ արևմտագերմանական պատմաբան Կ. Յեներնի կարծիքով «Սովետական Միությունը պատերազմի մեջ մտավ արդեն ջախջախված Ճապոնիայի դեմ» (Նույն տեղը, էջ 209), միաժամանակ լայնորեն պրոպագանդվում է այն կարծիքը, թե Ճապոնիայի կապիտուլյացիայի գործում վճռական նշանակություն ունեցավ ճապոնական երկու քաղաքների ատոմային ռմբակոծությունը։ Այսպես, ԱՄՆ-ի նախկին ռազմական մինիստր Գ. Ստիմսոնը հայտարարում է, թե «Հիրոսիմայի և Նագասակիի վրա նետված ռումբերը հանգեցրեցին պատերազմի վախճանին» (Նույն տեղը, էջ 211)։ Այդ նույն կարծիքին են ԳՖՀ-ում հրատարակված Երկրորդ համաշխարհային պատերազմի մեծ ատլաս գրքի հեղինակները և Անգլիայում հրապարակված Երկրորդ համաշխարհային պատերազմը աշխատության հեղինակային կոլեկտիվը (Նույն տեղը, էջ 212)։

Երկրորդ համաշխարհային պատերազմի պատմության բուրժուական, հատկապես արևմտագերմանական հեղինակների բնորոշ մեթոդներից մեկը ֆաշիստական Գերմանիայի պարտության պատճառների նենգափոխված գնահատումն է։ Մանշտեյնը, Տիպելսկիրխը, Էրդմանը, Յակոբսենը և ուրիշներ ճգնում են պարտության ողջ մեղքը բարդել միայն ու միայն Հիտլերի վրա, ժխտելով Գերմանիայի պարտության օբյեկտիվ պատճառներն ու օրինաչափ լինելը։ Նրանք պնդում են, թե Գերմանիան պատերազմը տանուլ տվեց ոչ թե այն պատճառով, որ Սովետական Միությունը ռազմական գոտեմարտում ավելի ուժեղ գտնվեց իր հակառակորդից, այլ ֆյուրերի ապաշնորհ, անձեռնհաս ղեկավարման, մարտական գործողությունները պլանավորելու և ղեկավարելու գործում նրա ճակատագրական սխալների հետևանքով։ Այս տեսակետից բնորոշ են արևմտագերմանական պատմաբան Կ. Ռիկերի Համաշխարհային պատերազմը տանուլ է տալիս մի մարդ, ամերիկացի հեղինակ Ու. Լանգերի Ադոլֆ Հիտլերի ուղեղը, Մանշտեյնի Կորուսյալ հաղթանակներ, Գ. Հիգինսի Հիտլերը և Ռուսաստանը և այլ գրքերի վերնագրերը (В. А. Секистов, указ. соч., стр. 49)։ Նրանք կաշվից դուրս են գալիս, որպեսզի ընթերցողին համոզեն, թե ֆաշիզմի պարտության գլխավոր պատճառը Հիտլերի ոչ լիարժեք մտավոր կարողությունն էր, նրա միանձնյա սխալ որոշումները, իր գեներալների կարծիքի անտեսումը։ Հատկանշական է, որ այս հեղինակները ամբողջությամբ ֆյուրերի վրա են բարդում ոչ միայն պատերազմում Գերմանիայի պարտության մեղքը, այլև գերմանական զորքերի պարտությունը արևելյան ճակատի բոլոր խոշորագույն ճակատամարտերում՝ Մոսկվայի ու Ստալին-

գրադի մոտ, Լենինգրադի մատույցներում և Կուրսկում, Դնեպրի շրջանում, Բելոռուսիայում և Բեռլինում:

Նպատակը պարզ է՝ սահմանազատվել Հիտլերից, վերականգնել գերմանաֆաշիստական բանակի ու նրա ղեկավարների վարկը, բորբոքել ռևանշիստական պրոպագանդան, նոր ագրեսիա նախապատրաստել սոցիալիստական երկրների դեմ:

ԱՄՆ-ի և նրա դաշնակիցների ագրեսիվ շրջանները գործը ներկայացնում են այնպես, թե իբր ամերիկա-անգլիական զորքերը փրկեցին աշխարհը ֆաշիզմից, այն դեպքում, երբ սովետական բանակը զբաղված էր միայն «հեղափոխության արտահանմամբ» այլ երկրներ, իսկ պատերազմից հետո իրենց փրկած աշխարհին, իբր, սպառնում է Սովետական Միությունը, որի դեմ պատերազմն անխուսափելի է և անհրաժեշտ:

Նրանց քաղաքական հաշիվները պարզ են՝ մի կողմից թուլացնել Սովետական Միության նկատմամբ արտասահմանյան երկրների ժողովուրդների վստահությունը, մյուս կողմից՝ արդարացնել ռազմական բլոկների ստեղծումը, ժողովուրդներին համոզել, թե իբր ՆԱՏՕ-ի ագրեսիվ քաղաքականությունը թելադրված է «կոմունիստական սպառնալիքից» «ազատ աշխարհը» «պաշտպանելու» ցանկությամբ:

Հայտնի է, որ Գերմանիայի համաշխարհային տիրապետություն հաստատելու հիտլերյան պլաններում ինչպես ռազմաստրատեգիական ու տնտեսական, այնպես էլ սոցիալ-դասակարգային տեսակետից վճռական նշանակություն էր տրվում սոցիալիզմի երկրի նկատմամբ հաղթանակին, որը, երրորդ ռայխի կառավարող էլիտայի հաշիվներով, պետք է «կանաչ փողոց» բացեր համայն աշխարհը նվաճելու ճանապարհին: Ելնելով դրանից, հիտլերականներն իրենց գլխավոր հույսը դնում էին ցամաքային ստրատեգիայի վրա և ստեղծել էին կապիտալիստական աշխարհի ամենաուժեղ ցամաքային բանակը, որպեսզի այն ուղղեն Սովետական Միության դեմ: Գերմանիայի ցամաքային զորքերը կազմում էին նրա զինված ուժերի ընդհանուր թվաքանակի 80 տոկոսը (История второй мировой войны, т. 12, стр. 269): Իսկ ինչ վերաբերում է Գերմանիայի ռազմածովային հզորությանը, ապա այն անհամեմատ ավելի թույլ էր, քան ԱՄՆ-ինն ու Անգլիայինը:

ՍՍՀՄ-ի վրա հարձակվելու պահին հիտլերյան հրամանատարությունը մեր երկրի դեմ դուրս բերեց իր ցամաքային բանակի 87 տոկոսը, ռազմաօդային ուժերի $4/5$ մասը և արբանյակ-պետությունների զգալի ուժեր: Պատերազմի ողջ ընթացքում, նույնիսկ 1944 թվականի ամռանը Եվրոպայում երկրորդ ճակատ բացելուց հետո, սովետա-գերմանական ճակատը պատերազմի գլխավոր տեղամասն էր և այդտեղ էին գտնվում Գերմանիայի ցամաքային ու օդային հիմնական ուժերը: Թվական տվյալները ցույց են տալիս, որ Հյուսիսային Աֆրիկայում ու Հարավային Իտալիայում, այսինքն՝ մինչև 1944 թվականի ամռանը ֆաշիստական բլոկի դեմ անգլո-ամերիկյան զորքերի հատվածներում, գործում էր Գերմանիայի ցամաքային ուժերի ընդհանուր կազմի 1—6 տոկոսը, իսկ 1944 թվականի հունիսի 6-ին, երկրորդ ճակատը բացելուց հետո ևս, նրանց դեմ գործում էր Գերմանիայի ուժերի $1/3$ մասից ոչ ավելին: Իսկ նրա գլխավոր, առավել մարտունակ միավորումները մնում էին արևելյան ճակատում (տե՛ս Правда и ложь... стр., 196): Սրան ավելացնենք նաև, որ պատերազմի ընթացքում, ինչպես երկրորդ ճակատը բացելուց առաջ, այնպես էլ հետո, գերմանացիներն անընդհատ նորանոր միավորումներ էին նետում արևմուտքից դեպի արևելք, 1941 թվականին՝ 17, 1942-ին՝ 69, 1943-ին՝ 46, 1944-ին՝ 80, 1945-ին՝ 56 դիվիզիա, ընդամենը 268 դիվիզիա, որից միայն 80-ը՝ փոխանակման կարգով (տե՛ս Германский империализм и вторая мировая война. М., 1961, стр. 161): 1945 թվականի հունվարին սովետական զորքերի դեմ գործում էր հակառակորդի 3,7 մլն զինվոր ու սպա, իսկ արևմտյան ճակատում և Իտալիայում անգլո-ամերիկյան զորքերի դեմ՝ 1,9 մլն (տե՛ս История КПСС, т. 5, кн. I, стр. 568):

Սովետական բանակը կոալիցիոն պատերազմում գործում էր ոչ միայն



գլխավոր ճակատում: Նրա ստրատեգիական խոշոր օպերացիաները վճռական ազդեցություն էին ունենում ինչպես հակաֆաշիստական ամբողջ պատերազմի ընթացքի, այնպես էլ մյուս ճակատներում դաշնակից զորքերի մարտական գործողությունների վրա: Ստալինգրադի մատույցներում մեր բանակի տարած մեծ հաղթանակը, արմատական բեկում մտցնելով համաշխարհային պատերազմի ընթացքի մեջ, բարենպաստ իրադրություն ստեղծեց 1942 թվականին և 1943 թվականի առաջին ամիսներին Հյուսիսային Աֆրիկայից հաջողությամբ դուրս շպրտելու գերմանա-իտալական զորքերին: Հարկ է նշել, որ Էլ-Ալամեյնում Մոնտգոմերիի զորքերի դիմաց գործում էին ընդամենը իտալական 11 և գերմանական 4 դիվիզիա՝ 80 հազար մարդ, իսկ Ստալինգրադի մոտ սովետական զորքերի դեմ գործում էր միլիոնանոց բանակ, գերմանական զորքերի ընտիր մասը և արբանյակ պետությունների զորքերի զգալի մասը: 1943 թվականի ամռանն ու աշնանը մեր զորքերի ծավալած հարձակողական խոշոր գործողություններն զգալիորեն կանխորոշեցին դաշնակից զորքերի հաջող ափհանումը Հարավային Իտալիա: 1944 թվականի առաջին կեսին սովետական բանակի ակնառու հաղթանակները արևելյան ճակատում գամեցին Գերմանիայի ցամաքային զորքերի և ավիացիայի գլխավոր ուժերն ու ռեզերվները, դաշնակիցներին հնարավորություն ընձեռելով հաջողությամբ անցնելու Լա Մանշը, ամրապնդվելու նորմանդական պլացդարմում և հարձակողական գործողություններ ծավալելու պատերազմի արևմտաեվրոպական ռազմաբեմում: Հարկ է առանձնապես նշել, որ սովետական զորքերի հուժկու հարձակումը 1945 թվականի հունվարին դաշնակից զորքերին Արդեններում փրկեց ջախջախումից: Հաշվի առնելով դաշնակիցների խնդրանքը, մեր զորքերը 1945 թվականի հունվարի 12-ին, այսինքն՝ նախատեսված ժամկետից մի շաբաթ շուտ, հուժկու հարձակման անցան Բալթիկայից մինչև Կարպատներ ընկած տարածությունում, դրանով իսկ գերմանական հրամանատարությանը հարկադրելով դադարեցնելու հարձակումն արևմուտքում և շտապ կարգով տանկային երկու բանակ նետելու արևելյան ճակատ: Այսպես, մեր բանակի կողմից իր դաշնակցային պարտքն ազնվորեն կատարելու շնորհիվ ձախողվեց հակառակորդի վտանգավոր հարձակումը:

Իրենց դաշնակցային պարտքի կատարմանն այլ կերպ էին վերաբերվում Անգլիայի ու ԱՄՆ-ի ղեկավարները: Սաբոտաժի ենթարկելով մասնավորապես Եվրոպայում 1942 թվականին երկրորդ ճակատ բացելու համաձայնագիրը, նրանք այդ չարեցին ոչ 1942, ոչ էլ 1943 թվականին: Եթե երկրորդ ճակատը բացվեր նախատեսված ժամկետին, ինչպես որ պահանջում էին միջդաշնակցային պարտավորությունն ու կոալիցիոն ստրատեգիայի շահերը, ապա հաղթանակը ձեռք կբերվեր զգալիորեն ավելի շուտ և զոհերն էլ ավելի քիչ կլինեին:

Ինչ վերաբերում է արևմտյան պատմագրության այն դրույթին, թե հաղթանակի գործում վճռական դեր է խաղացել երկրորդ ճակատը, ապա դա ևս չի դիմանում ոչ մի քննադատության: Իհարկե, 1944 թվականի հունիսի 6-ին դաշնակից զորքերի՝ Հյուսիսային Ֆրանսիա ներխուժելուց հետո հակառակորդը սեղմվեց երկու ճակատների աքցանում, որի հետևանքով սովետական զորքերի և անգլո-ամերիկյան բանակների ստրատեգիական փոխգործողությունը դրական ներգործություն ունեցավ ֆաշիստական Գերմանիայի նկատմամբ վերջնական հաղթանակ տանելու խնդրում: Սակայն դրանից հետո ևս հակառակորդի հիմնական ուժերն ու միջոցները շարունակում էին մնալ արևելյան ճակատում: Բնորոշ է, որ դաշնակիցների արևմտաեվրոպական զորքերի գլխավոր հրամանատար գեներալ Էյզենհաուերը խոստովանում էր, որ արևմտյան ճակատում անգլո-ամերիկյան զորքերի ստրատեգիական պլանավորումն ու պրակտիկ գործողություններն ուղղակի կախված էին սովետական բանակի հարձակողական օպերացիաների ընթացքից ու ելքից (տե՛ս Военно-исторический журнал, № 8, 1974, стр. 81): Իսկ այժմ կապիտալիստական աշխարհի շատ պատմաբաններ, խեղաթյուրելով պատմությունը, բացահայտորեն չափազանցնում են երկրորդ ճակատի նշանակությունը և խիստ գովաբանում ամերիկա-անգլիական հրամանատարության ռազմական արվես-

տը, այն համարելով ստրատեգիայի ու տակտիկայի բարձրագույն նվաճում։

Կեղծ է նաև բուրժուական պատմագրության այն տեսակետը, թե հաղթանակի գործում վճռական դեր է խաղացել ամերիկա-անգլիական ավիացիան։ Ինչքե, Գերմանիայի արդյունաբերական կենտրոնների ռմբակոծումները դաշնակիցների ավիացիայի կողմից ինչ-որ չափով թուլացնում էին հակառակորդի ռազմատնտեսական բազան, սակայն օդային հարձակումները չէին կարող կազմալուծել այն։ Փաստերը ցույց են տալիս, որ Գերմանիայի ռազմական էկոնոմիկան, չնայած սիստեմատիկ ռմբակոծություններին, մինչև 1944 թվականի ամառը վերելք էր ապրում։ Գերմանական պաշտոնական տվյալներով 1944 թվականի կեսերին Գերմանիայի ռազմական արտադրանքն ավելի քան 3 անգամ մեծ էր 1942 թվականի հունվարի համեմատությամբ (տե՛ս Промышленность Германии в период войны 1939—1945 гг. Пер. с немецкого. М., 1956, стр. 94)։ 1944 թվականին, 1943-ի համեմատությամբ, տանկերի արտադրությունը 10,7 հազարից հասել էր 18,3 հազարի, մարտական ինքնաթիռներինը՝ 19,3 հազարից 34,1 հազարի (տե՛ս История второй мировой войны, т. 12, стр. 200)։

Գերմանիայի ռազմական էկոնոմիկայի անկումն սկսվեց 1944 թվականի երկրորդ կեսից։ Եվ դրա գլխավոր պատճառը ոչ թե դաշնակիցների ավիացիայի գործողություններն էին, այլ սովետական բանակի վճռորոշ հաղթանակները, որոնց հետևանքով Գերմանիան զրկվեց ռումինական նավթից, Չեխոսլովակիայի, Լեհաստանի ու Հունգարիայի արդյունաբերական բազայից, Պետսամոյի նիկելից, ինչպես նաև Արևելյան ու Հարավ-արևելյան Եվրոպայի գյուղատնտեսական մթերքների աղբյուրներից։ Լուրջ նշանակություն ունեցավ նաև հիտլերյան զորքերին Ֆրանսիայից ու Բելգիայից դուրս շպրտելը, որի հետևանքով գերմանական բանակը զրկվեց նաև այդ երկրների արդյունաբերական պոտենցիալից։

Անհիմն է նաև կեղծարարների այն դրույթը, թե իբր մեր բանակը մարտերը շահում էր միայն հակառակորդի նկատմամբ ունեցած թվական բազմապատիկ գերակշռության շնորհիվ։ Իրականում մեր զորքերը ոչ մի ճակատամարտում տասներկու, առավել ևս՝ քանակապատիկ գերազանցություն չեն ունեցել։ Նույնիսկ բեռլինյան օպերացիայում մեր գերազանցությունը եղել է. մարդկանցով՝ 2,5 անգամ, հրետանիով ու տանկերով՝ 4 անգամ, ավիացիայով՝ 2,3 անգամ։ Իսկ եթե սովետական հրամանատարությանը հաջողվում էր գլխավոր հարվածների ուղղություններում ծավալված մարտերի ժամանակ հասնել կենդանի ուժի ու միջոցների գերազանցության, ապա դա վկայում է սովետական ռազմական արվեստի բարձր կատարելության, մեր զորապետների կարողության մասին, որոնք ստեղծում էին հարվածային խմբավորումներ, հաջողությամբ մանևրում և ուժերը կենտրոնացնում մարտի դաշտերում։ Իսկ «բազմապատիկ գերազանցության» առասպելի նպատակն է անտեղյակ ընթերցողին ներշնչել այն միտքը, թե իբր գերմանական բանակն ավելի լավ էր կռվում, քան սովետականը, նրա ռազմական արվեստն ավելի կատարյալ էր սովետականից և նրա պարտությունը պայմանավորված էր լոկ մարտական ուժերի ու տեխնիկայի պակասով և Հիտլերի արատավոր ղեկավարությամբ։

Ֆաշիզմի նկատմամբ տարած հաղթանակում սովետական բանակի վճռական դերի վկայությունն են նաև հակառակորդի և դաշնակից բանակների կորուստների համեմատական տվյալները։ Պատերազմի ընթացքում հիտլերյան զորքերի կորուստները սովետա-գերմանական ճակատում գրեթե 4 անգամ գերազանցել են մյուս բոլոր ռազմաճակատներում ունեցած նրանց կորուստներին։ Մեր զորքերը ջախջախել կամ գերի են վերցրել թշնամու 607 դիվիզիա, իսկ անգլո-ամերիկյան զորքերը՝ 176 դիվիզիա։ Հակառակորդի մարտական տեխնիկայի 75 տոկոսի և ավիացիայի 2/3 մասի կորուստը դարձյալ ընկնում է արևելյան ճակատի վրա։ Գերմանիայի 13 մլն 600 հազար մարդկային կորուստներից սպանված, վիրավոր՝ առանց շարք վերադառնալու, անհետ կորածներ ու գերիներ, թվով 10 մլն (73 տոկոսը) բաժին է ընկնում սովետական



բանակի դեմ նրանց մղած մարտերին (տե՛ս В. А. Секистов, указ. соч., стр. 35—36)։

Սովետական Միությունը պատերազմը շահեց հերոսական ջանքերի, անհավատալի տառապանքների և հսկայական զոհերի գնով։ Ֆաշիստական բռնապետությունից մարդկությունն ազատելու համար իր կյանքը տվեց սովետական ավելի քան 20 մլն մարդ։ Այդ նույն ժամանակամիջոցում ԱՄՆ-ը տվեց 300 հազար զոհ, իսկ Մեծ Բրիտանիան՝ 370 հազար մարդ (տե՛ս История второй мировой войны, т. 12, стр. 151)։ Պատերազմում Սովետական Միության ընդհանուր ծախսերի գումարը կազմեց 485 մլրդ դոլար։ Իսկ ԱՄՆ-ի պատերազմական ծախսերը, ներառյալ լենդ-լիզը, կազմեցին 330 մլրդ դոլար (տե՛ս Против фальсификаторов..., стр. 326—327)։ Հարկ է այս ամենին ավելացնել, որ ամերիկյան մոնոպոլիաները, որոնց համար պատերազմը չափազանց ձեռնտու բիզնես էր, ռազմական մատակարարումներից հարստացան աննախադեպ չափերով։

Սովետական բանակը վճռական դեր խաղաց նաև միլիտարիստական Ճապոնիայի ցամաքային բանակի գլխավոր ուժերը ջախջախելու, ագրեսիայի հեռավոր արևելյան օջախը վերացնելու գործում։ Ինչպես հայտնի է, Անգլիան և ԱՄՆ-ը, փաստորեն անհնար համարելով Ճապոնիայի դեմ արագ հաղթանակը, դիմեցին սովետական կառավարությանը՝ պատերազմի մեջ մտնելու Գերմանիայի ջախջախումից հետո։ Այս հարցի շուրջ պայմանավորվածություն ձեռք բերվեց Յալթայի միջդաշնակցային կոնֆերանսում և 1945 թվականի փետրվարին համաձայնագիր ստորագրվեց դաշնակից երեք կառավարությունների միջև։ Միջդաշնակցային պայմանավորվածության համաձայն 1945 թվականի օգոստոսի 8-ին Սովետական Միությունը պատերազմ հայտարարեց Ճապոնիային։ Մեր զորքերը կործանիչ հարված հասցրին միլիոնանոց կվանտունյան բանակին, որի կայծակնային ջախջախումը հակառակորդին հարկադրեց զենքը ցած դնել և նույն թվականի սեպտեմբերի 2-ին ստորագրել անվերապահ կապիտուլյացման ակտը*։ Այս կապակցությամբ ասենք, որ 1945 թվականի հուլիսին ճապոնական կառավարությունը մերժեց կապիտուլյացիայի վերաբերյալ անգլո-ամերիկյան ուլտիմատումը և մտադիր չէր զենքը ցած դնել։ Իսկ օգոստոսի 9-ին Ճապոնիայի պրեմիեր մինիստր Սուձուկին ռազմական բարձրագույն խորհրդի նիստում հայտարարեց. «Այսօր առավոտյան Սովետական Միության պատերազմի մեջ մտնելը մեզ վերջնականապես դնում է անելանելի վիճակի մեջ և անհնար է դարձնում պատերազմի հետագա շարունակումը» (История Великой Отечественной войны Советского Союза, т. 5, стр. 584):

Նշենք ևս մի փաստ. 1945 թվականի հունիսին ԱՄՆ-ի բանակի շտաբի պետ գեներալ Դ. Մարշալը երկրի պրեզիդենտին զեկուցում էր այն մասին, թե «Պատերազմի մեջ Ռուսաստանի մտնելու կարևորությունն այն է, որ դա կարող է Ճապոնիային կապիտուլյացիայի հարկադրող վճռական գործոնություն լինել» («Новая и Новейшая история», № 2, 1983, стр. 51):

Իրականում այսպես է եղել։ Իսկ ամերիկյան պատմագրությունը, անտեսելով փաստերը և խեղաթյուրելով պատմությունը, ճգնում է ապացուցել անապացուցելին, այսինքն՝ ժխտել մեր զինված ուժերի ակնառու դերը Հեռավոր արևելքում ագրեսորի նկատմամբ հաղթանակ տանելու գործում։ Ամերիկյան պատմաբաններից ոմանք անհեթեթ մեղադրանք են բարդում Ռուզվելտի վրա «ԱՄՆ-ի ազգային շահերին դավաճանելու» համար, այն բանի համար, որ նա համաձայնեց Ճապոնիայի դեմ պատերազմում Սովետական Միության մասնակցությանը։ Իսկ ինչ վերաբերում է այն առասպելին, թե Ճապոնիայի կապիտուլյացիան պայմանավորված էր 1945 թվականի օգոստոսի 6-ին Հիրոսիմայի ու Նագասակիի վրա ատոմային ռումբ նետելով, ապա հայտնի է, որ խաղաղ բնակչության դեմ կատարված այդ բարբարոսական

* Երկու շաբաթվա մարտական գործողությունների ընթացքում թշնամին կորցրեց շուրջ 700 հազար մարդ, այդ թվում գերեվարվեց 594 հազար զինվոր ու սպա։

*գործողությունը, որի հետևանքով ոչնչացվեց ու խեղանդամ եղավ 447 հազար մարդ, թելադրված չէր պատերազմական անհրաժեշտությամբ և չսասանեց ճապոնական ռազմամոլների վճռականությունը՝ շարունակելու պատերազմը։ Ատոմային հարվածն ավելի շուտ նախատեսված էր Սովետական Միությանն ատոմային շանտաժի քաղաքականությամբ վախեցնելու, քան Ճապոնիայի նկատմամբ հաղթանակի հասնելու համար։*

*Ճշմարտությանը բացահայտորեն հակասում է նաև լենդ-լիզի օգնությամբ «Սովետական Միությանը փրկելու» տեսակետը։ Մեր բանակն ագրեսորին հաղթեց՝ հենվելով սոցիալիզմի երկրի ռազմական հզոր էկոնոմիկայի վրա։ Իհարկե, ԱՄՆ-ի մատակարարումները նշանակություն ունեցան մեր զորքերը մարտական տեխնիկայով, ավտոտրանսպորտով, կապի միջոցներով, հանդերձանքով, պարենամթերքով և այլ անհրաժեշտ բաներով ապահովելու գործում։ Սակայն այդ մատակարարումները կազմում էին հայրենական արդյունաբերական արտադրանքի միայն 4 տոկոսը և, բնականաբար, չէին կարող որևէ չափով էական դեր խաղալ մեր զինված ուժերի հսկայական կարիքները բավարարելու գործում։ Բացի դրանից, մինչև 1942 թվականի գարուն, այսինքն՝ մեզ համար ամենածանր ամիսներին, ամերիկյան մատակարարումները զուտ սիմվոլիկ բնույթ էին կրում։ Մատակարարումների հիմնական հոսքը ՍՍՀՄ-ում սկսվեց 1943 թվականին, այսինքն՝ այն բանից հետո, երբ մեր բանակն արդեն արմատական բեկում էր մտցրել պատերազմի ընթացքի մեջ, իսկ երկրի ռազմական էկոնոմիկան արագորեն մեծացնում էր արտադրական հզորությունը։*

*Լենդ-լիզով ԱՄՆ-ի ծախսերը 1941 թվականի մարտի 1-ից մինչև 1945 թվականի օգոստոսի 1-ը կազմել են 46 մլրդ դոլար։ Այդ գումարից Մեծ Բրիտանիան ստացել է 30 մլրդ 269 մլն (65,7 տոկոսը), Սովետական Միությունը՝ 9 մլրդ 800 մլն դոլար (21,3 տոկոսը)։ Մնացած մասն ստացել են Ֆրանսիան, Չինաստանը, Լատինական Ամերիկայի երկրները և ուրիշներ։ Պատերազմի տարիներին Սովետական Միությունն ԱՄՆ-ից լենդ-լիզով ստացել է 9,6 հազար թնդանոթ, 10,8 հազար տանկ, 18,7 հազար ինքնաթիռ, 427 հազար ավտոմեքենա, որոշակի քանակությամբ կապի միջոցներ, պարենամթերք և այլն։ Համեմատության համար նշենք, որ այդ նույն ժամանակամիջոցում ՍՍՀՄ-ում արտադրվել է 488 հազար թնդանոթ, 104 հազար տանկ և ինքնագնաց հրետանային հարմարանք, 137 հազար ինքնաթիռ (տե՛ս* История Коммунистической партии Советского Союза, т. 5, кн. I, стр. 546, 544*)։ ԱՄՆ-ի օգնությունը հակաֆաշիստական կոալիցիայի մյուս պետություններին «հարուստ քեռու» ինչ-որ բարեգործություն չէր, ինչպես աշխատում են ներկայացնել բուրժուական կեղծարարները, այլ դա համապատասխանում էր բուն ԱՄՆ-ի՝ որպես կոալիցիոն պատերազմի մասնակցի, կենսական շահերին։*

*ՍՄԿԿ Կենտկոմի՝ «1941—1945 թվականների Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի 40-ամյակի մասին» որոշման մեջ նշված է. «Հայրենական մեծ պատերազմում Սովետական Միության հաղթանակը ողջ լիակատարությամբ բացահայտեց սոցիալիզմի առավելությունները, տնտեսական, սոցիալ-քաղաքական ու հոգևոր հնարավորությունները... Հայրենական մեծ պատերազմը համոզիչ կերպով ցուցադրեց կուսակցության ու ժողովրդի կուռ միասնությունը, բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և աշխատավոր մտավորականության անխորտակելի դաշինքը, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունն ու եղբայրությունը»։ Այս է պատմական ճշմարտությունը։ Եվ որքան էլ բուրժուական կեղծարարները ձգտեն ժխտել սովետական ժողովրդի վճռական դերը ֆաշիստական ստրկացման սպառնալիքից մարդկությանը փրկելու գործում, նրանց չի հաջողվի պատմության տարեգրությունից, ժողովուրդների հիշողությունից ջնջել սոցիալիզմի երկրի պատմական մեծ սխրանքը, որը կայրի դարեդար։*

---

# ՀԱՐՑԱԶՐՈՒՅՑ ԽՐԱՄԱՏՈՒՄ

**Անվանի գրող ՄԿՐՏԻՉ ՍԱՐԳՍՅԱՆՆ ավարտել է Պատերազմի ճամփաներով էսսեն, ուր պատմվում է Մեծ հայրենականում սովետական ժողովրդի հերոսական սխրանքի մասին։ Տպագրում ենք մի հատված, որ կրում է «Հարցազրույց խրամատում» վերնագիրը։**

**— Ընկեր լեյտենանտ, դուք վախենո՞ւմ եք մահից,**— դիմում է ինձ զինվորական լրագրող մայոր Դմիտրի Դրոզդովը։

— Պատերազմ է, ընկե՛ր մայոր։ Պատերազմում, մարտերի թոհուբոհում չվախենալ հնարավոր չէ։ Հետևաբար, ես էլ եմ վախենում. այն էլ ինչպե՛ս... Երբ տանկերի հեղեղը արշավում է վրադ, սիրտդ այնպես է թակում կրծքավանդակդ, որ թվում է, սրտիդ մեջ պայթելու պատրաստ ական է դրված և մեջքիդ վրա մրջյուններ են շարժվում։ Վախենում եմ, կյանքը՝ բնության այդ մեծագույն պարգևը, մարդուն տրվում է մեկ անգամ։ Գնդակը ծակեց սիրտդ, ուրեմն, աշխարհը հավիտյան կորավ քեզ համար, դու էլ՝ աշխարհի...

**— Եվ չե՞ք երկնչում խոստովանել...**

— Իսկ ինչո՞ւ չխոստովանել, չասել ճշմարտությունը։ Մենք պատերազմի մասնակիցներ ենք, այս արյունոտ ներկայացման շարքային դերակատարները։ Եթե լավ ենք կռվում, վախի մասին խոսք անգամ չի կարող լինել, խոսում են լոկ մեր քաջությունից։ Եթե վատ ենք կռվում, թիկունք ենք ցույց տալիս հակառակորդին, վախենալու հարցը ծնվում է ինքնըստինքյան, և հետևում է գնահատականը. «վախկոտ, խուճապարար, դավաճա՛ն...»։

**— Դուրս է գալիս, որ վախկոտը կարող է նաև հերոսանա՞լ...**

— Դմիտրի Վարլամովիչ, ընկե՛ր մայոր, վախկոտն ու վախենալը տարբեր բաներ են, տարբեր հասկացություններ։ Վախկոտությունը մարդկային բնավորություն է, բնավորության թուլություն, իսկ վախենալը կապված է պահի հետ։ Այդ ո՞ր քաջն է, որ չի վախենում պայթող ականից, որը, պատառոտելով հողի կուրծքը, մարդկանց վերածում է մահ ու հողի շաղախի։ Մարդը, որ բնավորությամբ վախկոտ չէ, թեև վախենում է, սակայն չի կորցնում գլուխը, այլ կռվում է իր կռիվը, փնտրելով հակառակորդին ոչնչացնելու և իր կյանքը, այո՛, կյանքը պահպանելու ուղիներ ու հնարքներ։ Իսկ վախկոտը կորցնում է գլուխը, մատնվում խուճապի։ Իսկ վախին, սարսափին հանձնված զինվորը կարող է փախչել, դասալքել, որ համազոր է դավաճանության...

**— Ձեր կարծիքը գերմանացի զինվորի մասին։**

— Ճիշտ կլիներ, եթե գերմանացի բառը փոխարինվեր ֆաշիստով. դրանք տարբեր բաներ են...

**— Թեկուզև այդպես...**

— Դաժան ու կարգապահ, անգութ ու ամբարտավան է ֆաշիստը։ Նա զարմանալի հետևողական է իր ատելության մեջ։ Պատմեմ մի դեպք։ Գրոհն ավարտվել էր մեր հաղթանակով, և կոկորդից վիրավորված գերմանացի օբեր-լեյտենանտն ընկած էր խրամաթմբին։ Մոտեցա։ Նրան թվաց, թե իրեն սպանելու մտադրություն ունեմ և այնպես աղերսագին, այնպես պաղատագին, այնքան մարդկային հայացքով նայեց ինձ, որ նույնիսկ ավտոմատի փողը հեռացրի, որ չվախենա և համոզվի, որ իրեն սպանելու միտք չունեմ։ Հետո, հենց այնպես, մի բան ասած լինելու համար, հարցրի նրան. «Շա՞տ ես վախենում»։ Հասկացավ։ Ցույց տվեց ձեռքի երեք մատը։ «Երեք երեխայի հայր է,— հուշեց կապավորս,— խնդրում է՝ խնայենք իրեն»։ «Մենք վիրավոր ու գերված թշնամուն չենք գնդակահարում»,— ասացի օբեր-լեյտենանտին։ Հետո շրջվեցի սանիտարների կողմը. «Տղանե՛ր,— ասացի,— քանի դեռ չի արնաքամվել սպան, անհապաղ

Էլ չխոսեց: Տարօրինակ հանգստություն ու թվացող ծուլություն ունի, նույնիսկ ամենաթեժ մարտում: Տանկերն արշավում են ուղիղ նրա վրա, իսկ նա աչքի տակով նայում է դրանց ընթացքին և մախորկա փաթաթում: Մարդ նայում է նրան և հանդարտվում: Այնքա՜ն հանգիստ ու առօրեական է կեցվածքը:

Մի օրինակ ևս. մեր գնդի հետախուզական դասակում է ծառայում իմ հայրենակիցը՝ սերժանտ Կարոն: Նա մասնագիտացել է «լեզուներ որսալու», մարդորսության մեջ: Դա նրա, եթե կարելի է ասել, ճակատային նեղ մասնագիտությունն է: Այս գործում նա ճարպկության ու հնարամտության այնպիսի օրինակներ է տալիս, որ նույնիսկ մեր ճակատայիններիս աչքին քայլող լեգենդ է: Մինչդեռ ինքն իր մասին ոչինչ չի պատմում, աքցանով իսկ խոսք չես քաշի: «Մարդորսության» համար նրան տրված է գործողությունների բավականաչափ ազատություն: Նա երբեմն չարաշահում է իրեն տրված արտոնությունը և ինքնադատաստանի նկատվող տհաճ փաստերը խանգարում են նրան՝ արժանանալու հերոսի «Ոսկե աստղին»: Մի խոսքով, հերոսության պրոբլեմը միանշանակ խնդիր չէ, այլ հավասարում բազմաթիվ անհայտներով: Սակայն պարզից էլ պարզ է մի բան— հերոսություն կոչվածը հաջողված կռիվ է մահվան դեմ՝ կյանքի անունից:

**— Ի՞նչ կասեք կռվող զինվորի հոգեբանության մասին: Ի՞նչ փոփոխությունների է ենթարկվում կռվող զինվորի հոգեկան աշխարհը: Տեսանելի՞ են այդ փոփոխությունները սովորական աչքին: Եվ ի՞նչ դեր ունի գաղափարական գործոնը զինվորի կյանքում:**

— Արդյոք դուք չե՞ք գերագնահատում իմ փորձն ու գիտելիքները, ընկե՛ր մայոր: Հետևակում մարտնչող զինվորը, որը գտնվում է առաջին գծում, այնքան շուտ է դուրս գալիս շարքից, որ հազիվ թե հնարավոր լինի կարճ միջոցում թափանցել նրա հոգեբանության մեջ, իսկ ուսումնասիրելու համար, ավա՜ղ, մենք ժամանակ չունենք: Սակայն, քանի որ ես պարտավոր եմ իմանալ իմ վաշտի մարտիկների տրամադրությունը, ասեմ. պատերազմը, մարտադաշտը մարդու, ներկա դեպքում զինվորի, հոգեկան աշխարհի վայրիվերումները բացահայտում է անմիջապես: Մահվան դեմ-հանդիման քայլելը, մահին հանդիպելու մշտական վտանգը զինվորի համար անսովոր վիճակ է, և դա երբեք չի դառնում սովորական ու առօրեական: Մարտի մեջ հայրենասերն ու դավաճանը, հերոսն ու դասալիքը որքան էլ ջանան չմատնել, քողարկել իրենց իսկական էությունը, միևնույն է, դա ոչնչի չի հանգեցնի, քանի որ անսովոր վիճակի մեջ մարդն ի վիճակի չէ դիմակավորվելու: Մարտի մեջ կեցվածքն ու արհեստականությունը բացառվում են: Խաղաղ կյանքում ճառերի ու ճամարտակությունների ետևում հնարավոր է ապահովաբար թաքնվել, մինչդեռ մարտում հռետորներին ամբիոններ չեն տրամադրվում: Հայրենասեր ես՝ մարտի ընթացքը ցույց կտա, հերոս ես՝ նույնպես, իսկ եթե վախկոտ ես ու խուճապահար, և, եթե կարող ես թաքնվել հակառակորդից, ապա յուրայիններից չես կարող:

Ինչպե՞ս է զինվորն առաջին անգամ մտնում մարտադաշտ և ի՞նչ փոփոխություններ են կատարվում նրա հոգեբանության մեջ: Հիշում եմ մի քանի ամիս առաջ գնացել էի համալրման ետևից: Մի վաշտի չափ տակավին անբեղ-անմորուս, մարտական փորձ չունեցող տղաների տեղավորեցինք վրանների մեջ, որ առավոտյան շարժվենք առաջավոր գիծ: Գիշերը, ինչպես ասում են, անցավ առանց պատահարների, եթե չհաշվենք գերմանական հեռահար հրետանու մի քանի ծանր արկերը, որոնք պայթեցին ճամբարի շրջակայքում: Առավոտյան պարզվեց, որ տղաներից երկուսը մեռել են, ո՛չ, ո՛չ, չեն սպանվել, նույնիսկ քերծվածք չեն ստացել, այլ մեռել են սրտի պայթյունից: Այս փաստն ինձ վրա ավելի ծանր տպավորություն թողեց, քան ռազմիկների զոհվելը մարտի ընթացքում: Ուրեմն, մեռել են վախից: Թեև հազվադեպ, սակայն պատահում են վախից մեռնողներ: Բայց հիմնականում պատերազմը արագ հասունացնում է մարդուն: Պատահել է, որ մի քանի ամսում երիտասարդ մարդն ամբողջովին ըսպիտակել է, ծերացել: Պատերազմը, չնայած իր զազրելիությանը, կոփում է մարդուն: Պատերազմն արթնացնում է նաև մարդու մեջ ննջող մութ բնազդները՝ եսամոլությունը, ավարի ու ավերի կիրքը, սպանելու և բռնաբարելու մոլուցքը, որոնք սովորական պայմաններում կարող են երբեք էլ չարթնանալ նրա մեջ: Այս երևույթները բնորոշ չեն մեր բանակին, սակայն նույնիսկ մեկ կամ երկու փաստ էլ կարող են ինչ-որ չափով հեղինակազրկել մեր զինվորականությանը: Հայրենասիրությունը, հայրենիքն ինքը՝ ամբողջ ձայնով, հրամայաբար պահանջում են ոչնչացնել թշնամուն: Սպանելը ոչ թե նպատակ, այլ միջոց է մեր հայրենիքը թշնամուց մաքրելու նվիրական գործում: Ի վերջո, պատերազմի մեծագույն չարիքը հարկավոր է որոնել ո՛չ միայն միլիոնավոր զոհերի ծանր կորստի, այլև սպանողների մարդկային ողբերգության մեջ: Ահա թե ինչե՛ր է անում պատերազմը մարդկային հոգու հետ: Մի խոսքով, ընկե՛ր մայոր, պատերազմը մարդու բան չէ, մարդկային գործ չէ, և պատերազմների մահը միայն կարող է նշանավորել մարդկայնության հաղթանակը: Ինչ վերաբերում է գաղափարական գործոնին, ապա արդի պատերազմում նրան է պատկանում ամենավճռական դերը: Այս պատերազմում իրար են բախվում իրարամերժ, հակոտնյա քաղաքական կուսակցությունները, գաղափարական ծայրահեղ մտայնությունները: Եվ այդ անհաշտելի բախումը մահացու է: Կամ մենք՝ կոմունիստներս, կամ նրանք՝ ֆաշիստները: Նույն արևի տակ այս երկու կուսակցություններին ապրելու տեղ չկա: Եվ մեր զինվորը, որ գիտակցում է գաղափարական պայքարի այս սրությունը, լավ է հասկանում, որ ինքը կրակում է և՛ նվաճողի, և՛ ֆաշիստի վրա՝ միաժամանակ: Պարտքը հայրենիքի, գաղափարական անհաշտելիությունը ֆաշիզմի նկատմամբ գաղափարական այն զենքերն են, որոնք ծնում են ատելության գիտությունը: Դրանք են զինվորի ներքին հոգևոր շարժիչներին մատակարարում այն վառելիքը, էներգիան, որը մահու և կենաց գոտեմարտում մեր զինվորին տանում է դեպի հաղթանակ:

Մայորը լսում է ինձ և նայում բլինդաժից երևացող երկնքի մի կտորին, ուր շառագունել է վերջալույսը: Առաջավոր գծից ոչ հեռու, ինչ-որ տեղ, հրդեհ է բռնկվել: Հոտից զգացվում է, որ խոտի դեզ է վառվում: Ծուխը կապույտ ու թափանցիկ շղարշ է քաշել վերջալույսի կարմրին և ծածանվում է՝ ծածանելով նաև մայրամուտի շառափը: Մայորը խնամքով գրի է առնում մեր զրույցը: Չգիտեմ գոհացնո՞ւմ են իմ պատասխանները նրան, սակայն նրա ծոցատետրի բազմաթիվ էջերն արդեն լցված են մեր խոսք ու զրույցով: Ակնոցի միջից նա երկար զննում է ինձ.

**— Եվս մի հարց: Գիտեմ, որ ազգությամբ հայ եք: Դա զգացվում է նաև ձեր առոգանությունից ու դեմքից: Ես հայ ընկերներ շատ ունեմ և բավականաչափ ծանոթ եմ ձեր ժողովրդին: Ինձ, և ոչ միայն ինձ, հայտնի է, որ այս պատերազմում ձեր հայրենակիցները մարտնչում են նախանձելի քաջությամբ ու համառությամբ: Իմ հարցը թող զարմանալի չթվա: Ինչո՞վ եք բացատրում հայերի անձնազոհության, վրիժառության հասնող ատելությունը գերմանացիների նկատմամբ: Ցանկանում եմ հուշել պատասխանվող հարցերի ուղղությունը: Նվիրվածությա՞մբ մեր կարգերին, գերմանացների նկատմամբ ունեցած հատուկ վերաբերմունքո՞վ, թե՞ ժողովրդի հազարամյա փորձով ու մարտունակությամբ...**

— Այդ բոլորով՝ միասին վերցրած,— պատասխանում եմ առանց տատանվելու,— դուք համարյա պատասխանեցիք ձեր իսկ հարցին և հուշեցիք նաև իմ պատասխանը: Որպեսզի երկար չպատմեմ մեր ժողովրդի անցյալի, բախտի ու ճակատագրի մասին, անմիջապես ասեմ, որ նրա բազմադարյան պատմության մեջ քսաներորդ դարի սկիզբը եղել է ամենաողբերգականը: 1915 թվականին երիտթուրքերը, աշխարհում առաջին անգամ, գործադրեցին եղեռնը՝ հայ ժողովրդի նկատմամբ: Արևմտահայաստանը կործանվեց: Մորթվեցին երկու միլիոն հայեր, մեկուկես միլիոնը ցրվեց աշխարհով մեկ: Քաղաքակիրթ աշխարհի աչքի առաջ մորթվեց տոհմիկ մի ժողովուրդ, և աշխարհը փակ աչքով ու գոց ականջով արձագանքեց այդ ոճրագործությանը: Կործանվում էր Հայաստանը, խեղդվում արյան մեջ, իսկ գերմանացիներն իրենց թուրք դաշնակցին աչքով էին անում, քաջալերելով նրանց յաթաղանի զորությունը, որ հոշոտում էր կանանց, երեխաներին ու ծերերին: Մի խոսքով, անկոչ հյուրերը դարձան արյունոտ տանտերեր: Ես կուզեի, որ դուք իմանայիք. թեև բզկտված ու հոշոտված, բայց հայ ժողովուրդը չէր ցանկանում մեռնել: Իսկ երբ ժողովուրդը մեռնել չի ցանկանում, նրան մեռցնելն անհնար է: Կռվեցին հայերը, թեև անդեկավար, անգամ անիշխան, բայց կռվեցին: Ե՛վ կործանվող Արևմտահայաստանում, և՛ այստեղ՝ Արևելյան Հայաստանում: Վկա՝ Վանի, Սարդարապատի, Բաշ-Ապարանի, Ղարաքիլիսայի ճակատամարտերը, որոնցում մեր ժողովուրդը ցուցաբերում էր իր ապրելու, հարատևելու կամքն ու իրավունքը: Եվ սպանելով իրեն, սպառում էր թշնամուն: Եվ երբ թըվում էր, թե ուր որ է վրա կհասնի ֆիզիկական կործանումը, մեր լեռներում երևաց հեղափոխական Ռուսաստանի փրկարար զորությունը: Մեր լեռներում ծփաց կարմիր դրոշը, և Հայաստանը հարյավ մոխիրներից ու ավերակներից: Հայ ժողովուրդն սկսեց ապրել ու ստեղծագործել: Մենք բազմափորձ ժողովուրդ ենք, ընկե՛ր մայոր: Մեր կենսունակությունը և հոգևոր առողջությունը չափվում է մեր երեքհազարամյա գոյությամբ: Պատմությունը մեզ սովորեցրել է անսխալ կերպով ճանաչել և՛ մեր բարեկամներին, և՛ թշնամիներին: Կըցանկանայի, որ դուք համոզված լինեք՝ Հիտլերն այսօր իր հակամարդկային և ցեղասպանության զենքերը փոխ է առել իր նախորդներից՝ Թալեաթից, Էնվերից, Ջեմալից: Կկամենայի՝ դուք իմանայիք, որ ֆաշիստներն այսօր

իրենց հանցալի գործողություններում աշակերտում են երիտթուրքերին, որ նրանք ֆետիշացնում են ցեղասպանությունը, անպատիժ կերպով բնաջնջելով ժողովուրդներին և մատնացույց անելով հայկական ջարդերը: «Հիմա ո՞վ է հիշում հայկական կոտորածները»,— իր վայրագ հորդաները Եվրոպայի և աշխարհի վրա բաց թողնելուց առաջ լկտիաբար հայտարարեց Հիտլերը: «Ո՞վ է հիշում...». ուրեմն, Հիտլերը իր հույսը դրել է մարդկության մոռացության վրա: Բայց պատմությունը, որ մարդկության հիշողությունն է, երբեք չի հիվանդանում սկլերոզով, անհույս մոռացկոտությամբ: Հայկական կոտորածները չեն մոռացվել և չեն մոռացվելու: Եվ ահա, այսօր, հայերը, եղբայրական խրամատներում, պատերազմի փոթորիկների մեջ, այդ արյունոտ հիշողության վրեժն են լուծում հիտլերյան վայրենի կամակատարներից: Եթե ճիշտն եք ցանկանում իմանալ, ընկե՛ր մայոր, մենք բարոյական ու ֆիզիկական քննություն ենք հանձնում և՛ մեր հայրենիքին, և՛ մեր պատմությանը, և՛ մեր փրկարարին: Այս պատերազմում մենք պաշտպանում ենք մեր ժողովրդի ազգային արժանապատվությունը, նրա պատմական հեղինակությունը: Այս պատերազմում մենք պարտվելու իրավունք չունենք, որովհետև ֆաշիստներին համարում ենք քսաներորդ դարի ամոթն ու խայտառակությունը և թուրքերի արյունոտ գործի շարունակողներն ու ժառանգորդները: Կռվում ենք ապրելու, արյուն ենք հեղում գոյատևելու և մեռնում ենք նոր եղեռնը մեղմելու երդումով: Հայրենասիրությունը, ինքնին, հայրենիքի, սովետական հայրենիքի նկատմամբ ունեցած պարտքի գիտակցությունն է, և գիտակցված մահը մենք գերադասում ենք անպատիվ գոյությունից:

**— Ահա թե ովքեր եք, դուք, հայերդ,—** երկար լռությունից հետո խոսում է մայորը,— **դուք արժանի եք հարատևելու, և ձեր պատմությունը հավերժական է: Ես հավատում եմ...**

Ապա՝

**— Իսկ այժմ պատմեցեք ձեր մասին,—** խնդրում է մայորը:

— Ի՞նչ կարող եմ պատմել ինձնից,— թոթվում եմ ուսերս,— պատմելու ոչինչ չունեմ: Այս քանի օրս լրացավ իմ տասնինը տարին: Իմ տարիքի մարդիկ մեծ կենսափորձ չունեն: Իրենց կյանքի կարճ ճանապարհին չեն անցել այն ուսանելի դպրոցը, որը դաս դառնա ուրիշներին: Այնպես որ...

**— Ինչպե՞ս եք զգում ձեզ այստեղ, առաջավոր գծում:**

— Մի՞թե հնարավոր է կռվում, մարտադաշտում լավ զգալ: Եթե ասեմ՝ լավ եմ զգում, չհավատաք: Եթե որևէ մեկը ձեզ նույնիսկ երդվելով փորձի հավատացնել, որ լավ է զգում ռազմաճակատում, չհավատաք: Վատ եմ զգում ինձ, ընկե՛ր մայոր, ավելի վատ վիճակ անհնար է պատկերացնել, երբ յուրաքանչյուր օր, ժամ ու րոպե մահը հնձում է քո ընկերներին, քո զինակիցներին, քո սերնդակիցներին, մարդկանց... երբ անընդմեջ կրակի տակ, մարդ արարածը մեռնում ու հարություն է առնում...

**— Հասկանում եմ, հասկանում,—** գլուխը տարուբերում է մայորը,— **բայց պարտքի զգացումը պետք է որ հաշտեցնի մարդուն ճակատային անսովոր վիճակի հետ...**

— Այ, դուք օգտագործեցիք անսովոր վիճակ արտահայտությունը: Այս պարագայում անսովոր վիճակը երբեք սովորական չի կարող դառնալ մարդուն: Այո՛, պարտքի զգացումը մեծ ուժ է. այն է ստիպում սեղմել ծնոտը, հրամայում դիմանալ: Սակայն պարտքի զգացումն անգամ անկարող է հաշտեցնել օրերով, ամիսներով փորսող տալուն, չորեքթաթ սողալուն, կուզեկուզ քայլելուն, պորտը գետնին մաշելուն, որպեսզի մարդ խուսափի մահվան կույր և ամենատես աչքից: Մեկ-մեկ մեջս ցանկություն է առաջանում ուղղել, շտկել ուսերս, գլուխս բերել նախկին բնական վիճակին, հաղթահարել չորեքթաթությունը և վերադառնալ իսկական երկոտանի մարդուն: Սակայն ապրելու տենչը, կենսասիրությունը մարդու նույնիսկ այդ վիճակը գերադասում են մեռած վիճակից: Մտքի ու սրտի բախումները անընդմեջ են, ընկե՛ր մայոր: Սերն ու կարոտը, ազատասիրությունն ու հոգու թռիչքները մերժում են սողալն ու չորեքթաթ ապրելը: Սակայն պարտքը երևի ավելի զորեղ է, քան մահը: Եվ մարդը, հաղթահարելով մահվան դիմադրությունը, ինքն է գրոհում մահվան վրա: Իսկ ես այնքան եմ երիտասարդ, որ չեմ կարողանում անսովորին ընտելանալ: Ես կարոտում եմ աղջիկներին, ցանկանում եմ բարձրաձայն սիրային երգեր երգել, ցանկանում եմ կարոտից ոռնալ, արտասվել, երկրպագել արևին, արևածագի գեղեցկությանը բանաստեղծություններ ձոնել, ճախրել թռչունների հետ և գունավոր երազներով լուսավորել իմ գիշերները: Ծա՜տ եմ ուզում հավատալ, որ ողջ կմնամ և վերստին կնվաճեմ իմ երազանքները, իմ ջահելությունը, ապրելու և արարելու իմ իրավունքը:

**— Դուք երբևէ կասկածե՞լ եք մեր հաղթանակին...**

— Երբե՛ք: Հավատացել և հավատում եմ մեր հաղթանակին: Չհավատայի, կխելագարվեի այս դժոխքում: Ամենածանր պահերին անգամ ես տեսել եմ հաղթանակը, մասնակցել եմ մեծ տոնախմբությանը: Այժմ էլ տեսնում եմ այն, լսում նրա ոտնաձայնը: Նա գալիս է, թեև կիսափակ են նրա ճամփաները: Բայց մենք կբանանք նրա ճանապարհը: Կորովի համառությամբ և կյանքի գնով ու արյունով կգրենք նրա մուտքի անցագիրը...

**— Դուք բանաստեղծ եք, լեյտենա՛նտ...**

— Ես բանաստեղծ կդառնամ, ընկե՛ր մայոր, անպայման կդառնամ, եթե ողջ մնամ:

**— Այնուամենայնիվ, պատմեցեք ձեր մասին: Ձեր վաշտի առօրյայից, ձեր գործած անձնական քաջության որևէ դրվագ, էպիզոդ պատմեցեք...**

— Վաշտի առօրյայից արդեն բավականաչափ պատմել եմ: Կարծում եմ բավական է այն փաստը, որ իմ վաշտի մասին դրական կարծիք կա...

**— Համեստություն եք անում, լեյտենա՛նտ...**

— Ո՛չ, ես ճշմարտությունն եմ ասում, ընկե՛ր մայոր: Այդ համեստ կոչվածներն էլ բաժանվում են երկու խմբի՝ համեստների և համեստություն խաղացողների: Կա համեստության մի տեսակ, որն օգտագործվում է մեծամտության փոխարեն: Ռազմաճակատի գլուխգովանների նկատմամբ ես այլ վերաբերմունք ունեմ: Եթե մեկը հակառակորդի՝ դաշույնի նման կտրող կրակի տակ շարժվում է առաջ, երբ կարկուտի պես թափվող արճճի ու պողպատի տակ փորձում է գրոհել, ինչ էլ որ հորինի նրա երևակայությունը, եթե հրաշապատում հեքիաթներ էլ պատմի, ես խորին հարգանքով կլսեմ նրան, որովհետև այս պատերազմի մասնակիցներն իսկական հերոսներ են, անկախ նրանցից ունե՞ն հերոսի կոչում, թե՞ ոչ:

**— Եվ դուք, ուրեմն, բոլորի հե՞տ...**

— Եվ ես էլ բոլորի հետ: Տեսնո՞ւմ եք, ի վերջո սպառվեց իմ համեստության բաժակը և ես՝ անհամեստս, հերոսի կեցվածքով զրուցում եմ զինվորական թղթակցի հետ...

**— Որպեսզի դուք խոսեք նաև ձեր մասին, ցանկանում եմ մի քիչ փոխել հարցի ուղղությունը: Ձեր առնչությունները բարձր հրամկազմի հետ: Ձեր կարծիքը (եթե ինչ-որ չափով ճանաչում եք) նրանց մասին և, որպես հրաձգային ստորաբաժանման հրամանատար, ձեր վերաբերմունքը շարքայինների նկատմամբ:**

— Տարօրինակ հարց է, ընկե՛ր մայոր: Բարձրագույն հրամանատարության հետ ես ոչ մի առնչություն, ոչ մի շփում չեմ ունեցել: Ռազմաճակատում իմ անմիջական պետերը եղել են գումարտակի և գնդի հրամանատարները: Լինելով դասակի, ապա վաշտի հրամանատար, իմ շրջապատում ես միշտ տեսել եմ շարքային մարտիկներին և կրտսեր ու միջին հրամկազմի սպաներին, որոնք էլ եղել են իմ ընկերները: Նրանք են եղել ինձ հետ խրամատներում, կրակի տակ և ընդմիջման պահերին, նրանց հետ եմ կիսել իմ հացն ու ծխախոտը, կարոտի երգերն ու վերքերի ցավը, անքուն գիշերներն ու կատաղի մարտերի դժվարությունները: Իսկ ավելի բարձր հրամանատարության հետ, ես նկատի ունեմ մինչև դիվիզիայի հրամանատարը, իմ հանդիպումները կրել են պաշտոնական կամ պատահական բնույթ: Սակայն բանակում, այն էլ պատերազմական ժամանակներում, զորապետի շունչն ու շնչառությունը հասնում են նույնիսկ ամենավերջին մարտիկին՝ որպես նվիրական պատգամ, որպես անքննելի և անքննադատելի որոշում, որպես հայրենիքի ձայն ու հրաման: Բանակն ապրում է խստիվ մշակված օրենքներով, և յուրաքանչյուր շեղում դրանցից, բախտորոշ պահերին կարող է դիտվել որպես դավաճանություն: Հազիվ թե ես կարողանամ գնահատական տալ մեր զորապետների գործողություններին, վերլուծել մարտավարության գաղտնիքները և զորավարական հմտությունները: Կարող եմ, սակայն, վստահորեն ասել, որ գնալով ավելի հմտանում և ավելի փորձառու են դառնում մեր զորապետները: Նման մեծ պատերազմը պետք է որ ծներ և ծնում է իր զորավարական տաղանդներին, իր խոշոր ստրատեգներին: Ավելին ոչինչ չեմ կարող ասել բարձրագույն հրամանատարների մասին:

Ճակատագրի բերումով, այսպես կոչված, իմ բանաստեղծական տարիքին, երբ մուսաների բարյացակամությունից ճխում էր իմ սիրտը, վրա հասավ պատերազմը և ինձ նետեց զինվորական ուսումնարան, ուր ունկնդրի նստարանին, որ բոլորովին նման չէ աշակերտականին, նույն թղթի մաքուր էջին հրետանային ազիմուտի խնդիրների կողքին գրում էի նաև իմ բանաստեղծությունները, փորձելով հաշտեցնել բանաստեղծին ու զինվորին: Հաշտվեցի՞ն նրանք, թե ոչ, չգիտեմ, սակայն իմ մեջ նրանք ապրում են թվացող հաշտությամբ, թեև բանաստեղծը խանդում է զինվորին, և զինվորը՝ բանաստեղծին: Ինչ որ է, ռազմաճակատ ընկա որպես հրաձգային ստորաբաժանման հրամանատար: Ես շատ դժվար եմ հաշտվում ոչ թե զինվոր, այլ զինվորական լինելու վիճակին: Ունենալով սպայի կոչում՝ դժվարությամբ եմ մտել իմ դերի մեջ, որովհետև հրամանատար լինելն իմ կոչումը

չեմ համարել, այլ համարել եմ իմ դերը: Խոստովանեմ, որ եթե մի կողմից այդ մտայնությունը դժվարացնում է իմ աշխատանքը, մյուս կողմից էլ հեշտացնում է իմ վարվելակերպը շարքային մարտիկների հետ, որոնք հանձին ինձ տեսնում են ո՛չ միայն հրամայողին, այլև բախտակից ընկերոջը: Անսեթևեթ վարվեցողությունը ինձ ավելի է մոտեցնում մարտիկներին: Ինչ որ է: Հրամայելու մեջ աչքի չընկնող հրամանատարս խնդրանք-հրամանով կարողանում եմ յոլա տանել գործը: Եվ արդյունքից դժգոհ չեմ: Իմ վաշտի զինվորները կարգապահության և մարտունակության առումով երբեք չեն եղել վերջին շարքերում: Սիրում եմ լսել տարեց ու փորձված զինվորների խորհուրդները: Պատմեմ մի դեպք. գրոհելու էինք «Ավազաթմբեր» կոչվող բարձունքը: Տեղանքն այնքան էր հարթ, որ, ինչպես ասում են՝ գլուխ թաքցնելու տեղ չըկար: Գումարտակի շտաբի պետի ձեռքով կազմած հարձակման քարտին նայելիս, սիրտըս թպրտում էր անիմաստ կորուստների և անօգուտ գրոհների հեռանկարից: Իսկ հրամանը այսպիսին էր. ճակատային գրոհով նետվել «Ավազաթմբեր» բարձունքի վրա: Հարձակումից մեկ ժամ առաջ ինձ է մոտենում քառասունն անց, հերքը ճերմակած շարքային Մատվեևը, որ մինչև զորակոչվելը գյուղական ուսուցիչ է եղել և ասում է, որ մի նեղլիկ ձորակ, ավելի ճիշտ հեղեղատ կա, որով կարելի է աննկատ հասնել մինչև գրոհի բնագիծը, իսկ այնտեղից մինչև թշնամական պաշտպանությունը՝ ձեռքդ երկարես՝ կհասնի, մի քանի տասնյակ ցատկ տարածություն է: «Գուցե տղաներին հաջողվի այդ կարճ տարածքը հաղթահարել, հակառակ դեպքում գրոհի բնագիծ ոչ ոք չի հասնի, ընկեր լեյտենանտ... Կհնձեն, կհնձե՛ն տղաներին»: Առաջարկը միանգամայն խելացի թվաց ինձ, և ես բաց արի տեղագրական քարտեզը: Զարմա՜նք... Քարտեզում շատ հստակ նշված էր ձորակը, որը գումարտակի հրամանատարությունը, չգիտես ինչու, ուշադրության չէր արժանացրել: Անմիջապես զեկուցեցի հրամանատարին՝ հարձակումը ձորակից զարգացնելու իմ որոշման մասին, որն ընդունվեց նկատելի դժկամությամբ, սակայն մայորը չփորձեց արգելել իմ որոշումը: Բայց զգուշացրեց. «Տեսեք, հա՜, լեյտենա՛նտ, հրամանը փոխելու պատասխանատվությունն ինձ վրա չեմ վերցնում, նույնիսկ տեղյակ չեմ, իմացա՞ք, եթե տապալվի գրոհը, ձեզ պետք է որ հայտնի լինի հետևանքը»: Բարեբախտաբար գրոհը պսակվեց հաջողությամբ, մեր վաշտը թափանցեց հակառակորդի պաշտպանությունը և բարձունքը գրավեց առանց մեծ կորուստների: Դժվար է ասել, թե փորձված զինվորի առաջարկի շնորհիվ քանի մարդկային կյանք փրկվեց, սակայն աներկբա են մի քանի տասնյակ մարդկանց փրկությունն ու գրոհի հաղթական ավարտը: Զինվորներին ունկնդրելը, նրանց խելացի խորհուրդները կարևորելը ոչնչով չեն խաթարի հրամանատարի հեղինակությունը: Ես հերոս չեմ, այդպիսին չդարձա: Նման ցանկություն կամ երազանք, մեղքս ի՞նչ թաքցնեմ, երբեք չեմ փայփայել: Աչքի ընկնելու, գովեստների արժանանալու պահանջ ևս չեմ ունեցել: «Վատ է այն զինվորը, որ չի ցանկանում գեներալ դառնալ» սուվորովյան ասացվածքի ճշմարտությունը, մեղմ ասած, հարմար չէ իմ բնությանը և ինձ համար ընդունելի չէ: Գեներալ դառնալ չեմ ցանկանում: Պարզապես իմ մեջ նստած սկըսնակ, խակ մի բանաստեղծ անընդհատ խառնվում է իմ զինվորական գործերին: Իմ մեջ միշտ արթուն է ստեղծագործելու տենչը, որ ինչ-որ չափով իմաստավորել է իմ գործողությունները, զերծ պահել ինձ կոպտությունից ու կոշտությունից:

Ես ավարտում եմ իմ խոսքը: Մայորը գրչի շեշտ շարժումով դնում է վերջակետը: Բլինդաժում արդեն մութ է, և երկնքի երևացող պատառիկը ձուլվել է մթությանը: Բլինդաժ է մտնում իմ կապավորը՝ ճաշով լի կաթսայիկները ձեռքին:

— Վառի՛ր պատրույգը,— ասում եմ նրան:

**ՄԿՐՏԻՉ ՍԱՐԳՍՅԱՆ**

# ՈՐ ԳՅՈՒՂԸ ԿԱՆԳՈՒՆ ՄՆԱ

**ՁՅՈՒՆԸ ՋՆՋԵԼ ԷՐ** Փշոնք, Մեջտեղի, Ջահուկ, Այգիների ձորերի կածանները, բքակոխ արել յոթ բլրի վրա փռված Ջառիթափ գյուղի ճամփան, որով ամռան մի օր, իրենց ծուխծխանիները թողնելով մնացողաց, դեպի Հյուսիսային Կովկաս, Ազովի ափ, Մոսկվա էին գնացել բոլոր հնձվորները, մանկալները, սերմնացանները: Թեպետ յոթ հարյուր սարի, յոթ հարյուր ձորի չափ հեռու՝ պատերազմը Ջառիթափ էր հասել՝ միջոցների պակասի, սառնամանիքի, «սև թղթի», կարոտի ու սպասման պատվերով:

Արար-աշխարհից մեկուսի, կոշտուկոպիտ ձեռքերը մեկնելով դեպի Գերմանիա, անիծելով մարդակեր Հիտլերին՝ գյուղի կանայք ու ծերունիները ևս «կռիվ էին մղում»: Ապրելու կռիվ: Հողը չայրիացնելու կռիվ: Գարնանը հողին սերմով պատասխան տալու կռիվ:

Եվ նրանք, կոլտնտեսության գրասենյակում խռնված, սպասում էին շրջկենտրոնի խոսքին: Նախագահ Արտուշը չէր հեռանում հեռախոսից: Վերջապես հնչեց զանգը: Նա դեմքի ջղաձգումներով ունկնդրեց խոսակցին, թույլ ժպիտով նրա հայտնած լուրը վերահաղորդեց գրասենյակում հավաքվածներին:

— Ժողովո՛ւրդ, մեր գյուղին հազար կիլոգրամ գարի են տվել: Վաղը ոտք ունեցողը պարկն առնի թևատակ, գնալու ենք Սիսիան:

...Ճանապարհն անցնում է Որոտանի լեռնանցքով, մոտ հարյուր կիլոմետր: Լեռնանցքում բուքն ամեն օր լեռնապար է խաղում ու միակ ճանապարհը ջնջում երկրի երեսից:

Պետք էր օրը ցերեկով կտրել լեռնանցքը, քանի Ամոլ սարը չէր գժվել: Պետք էր քայլել միմյանց ոտնահետքերով՝ ձյան մեջ չթաղվելու և բքախեղդ չլինելու համար:

Հակառակի պես պատերազմի տարիներին, բնության չգրված օրենքով ձմեռը խստաշունչ էր լինում և տևում էր մինչև ապրիլ ամիսը: Բուքն էլ իր սև գործն էր տեսնում՝ փողոց, կտուր հավասարեցնում: Գյուղից գյուղ, շրջկենտրոն կամ Նախիջևան գնալը կապված էր մեծ դժվարությունների հետ:

Իսկ գնալ պետք էր: Սովից փրկվելու համար կանայք վաճառքի, փոխանակման էին հանում իրենց հարսանեկան շորերը, ճակատ մեկնած ամուսինների հագուստը, անգամ նշանի մատանին չէին ափսոսում:

Գյուղը նոսրացել էր: Այրիներից շատերը փոքր խմորակերների տեր էին: Այնպես որ գյուղի ղեկավարների կազմած ցուցակներով 300 կգ գարին մնում էր բաց:

— Գուցե դիմենք դպրոցականներին,— խորհրդակցեց նախագահը,— մեծահասակ տղաները գոնե իրենց բաժնի մի մասը կարող են բերել:

Ամեն ինչ նախապատրաստվեց գիշերը՝ վաղ արշալույսին մեկնելու:

Գյուղսովետի գործկոմի նախագահ Թագուշը, որը ջահել աղջիկ էր, ձեռքերը ծալեց կրծքին և խորհրդանշական նայեց կոլտնտեսության նախագահին:

— Մարդիկ երեք օր ոտքով ճանապարհ են գնալու, իսկ ի՞նչ են ուտելու, ընկեր Սաֆարյան:

— Ես էլ եմ մնացել շվարած, սերմացուի՞ց տամ, բա գարնանը ի՞նչ ենք ցանելու...,— նա մտազբաղ քայլեց գրասենյակի երկայնքով ու մոտեցավ հեռախոսին:

— Դիմենք կուսշրջկոմի քարտուղարին: Ընկեր Գրիգորյանը մի ճար կանի,— իր կարծիքը հայտնեց Թագուշը:

— Այս ուշ ժամի՞ն:

— Ես ինքս կզանգեմ,— հեռախոսին մոտեցավ նա,— առաջին անգամ է, ի՞նչ է:

...Խոսակցությունը շրջկոմի քարտուղարի հետ կարճ տևեց: Հարցը լուծվեց: Աղամամութին հացի փոխից մեկական կիլոգրամ հաց ըստանալով՝ գյուղացիները ճամփա ընկան:

Ես մորս հետ էի, փոխարինում էի զոհված զինվորի այրի Հայկանդուխտին, որը հիվանդ էր և մեկ մատ երեխաների տեր:

Առաջին անգամ չէ, որ այդ դժվարին ճամփան պիտի կտրեինք: Ինձ թվում էր՝ անհատնում է գյուղի կանանց ուժը: Նրանք մանգաղով 450 հեկտարի հունձը ավարտում էին մինչև սեպտեմբերի վերջը: Զարմիկը փոխարինել էր տրակտորիստ ամուսնուն, Մարոն՝ մանկալ եղբորը, պատանիներ Հայրիկը, Հրաչը, Զավենը, Հրանտը, Վլոդյան և շատերը, ճիպոտները տալով աղջիկներին, գութանի մաճը բռնեցին: Սաթոն ու Թանգոն դարձան բրիգադա-

վարներ: Առավոտ կանուխ գյուղը կանանց կանչերով էր լցվում...

Դաշտերում, այգիներում, կալերում, ֆերմաներում, ամենուր յուրահատուկ ճակատ էր բացվել: Երեկվա նրբիրան հարսները, ինչ-որ գերբնական ուժով լցված, բամբակե բաճկոններ հագած, մեջքին շալ կապած հաց էին անում: Ամեն փութ հացը մի պայթող ռումբ էր, մի շառաչուն ապտակ՝ անարգ թշնամու երեսին:

Պատերազմի երկրորդ տարի. Ջառիթափը 275 տոննա հացահատիկ հանձնեց շտեմարան, 50 հազար ռուբլի մուծեց ռազմական փոխառության դիմաց, հարյուրավոր ծանրոցներ ուղարկեց ռազմաճակատ...

«Ամեն ինչ ռազմաճակատի համար»:

Այո՛, գյուղացին չէր խնայում իր վերջին ունեցածը, տալիս էր՝ զրկելով իրեն, տալիս էր, որ կասեցներ ֆաշիզմի ներխուժումը Ստալինգրադ, Կովկաս: Այդ զգացումով էլ մենք գնում էինք Սիսիան...

...Մեր քարավանը լեռնանցքի ոլորանները հաղթահարեց մինչև օրվա կեսը: Ամուլ սարի գագաթին նշմարվեցին սև ու մութ ամպակույտեր: Հոգնած ու սոված կանգ առանք Բորիսովկա գյուղում. կոլտնտեսության նախագահը՝ Սամո քեռին, հոգաց բոլորիս օթևանի մասին:

Հաջորդ օրը հասանք Սիսիան և ստացանք մեր հասանելիքը: Մեր ուրախությունը միայն գարին ստանալը չէր, բա գարու աղա՜նձը, թարփթա՜ն... Ես ու մայրս մի փոքրիկ տոպրակ գարի առանձնացրինք և շտապեցինք ջրաղաց: Աղացինք, և մեր ծանոթի թոնրում մայրս հանույքով թարփթա թխեց: Քանի՜-քանի՜ ամիս, գուցե արդեն տարի, մայրս չէր չոքել թոնրի շրթին: Ախր, մի բուռ գարի կամ ցորեն ճարելիս շիլա էր եփում՝ ջրի՜կ, ջրի՜կ... իսկ այսօր թարփթան... մեջտեղը՝ ծակ, համո՜վ, փափո՜ւկ, տաքո՜ւկ...

— Երեխին քիչ-քիչ տուր, աղիքը կպայթի,— մորս խորհուրդ էր տալիս տանտիրուհին:

Մայրս բերանը պատառ չէր դնում:

— Քոռանան մորդ աչքերը, բալեքս,— կսկըծում էր նա և աչքերը արցունքով լցնում,— տեսնես հիմա ի՞նչ են անում, ի՞նչ կերան...

Մեր քարավանը որքան էլ շտապեց, արևամուտին հազիվ հասավ լեռնանցքի գագաթը: Իմ առջևից քայլում էին Նունին, Վարսենը, Մայրիկը, Սաթենը, Մարգարիտը, Օսինկան, Սիրանուշը և շատերը (ո՞ր մեկին թվես)՝ 40—45-ական կիլոգրամ գարու բեռը շալակներին: Քարավանի առջևը քաշում էին Գեղեցիկը, Թաքոն, Սաթոն, Նազելին, Մարգարիտը...

Քայլող մարդկանց շարանը սպիտակ ձյան վրա նմանվում էր անփութորեն քանդված սև պարանի, որի մի ծայրն արդեն կախվել էր լեռնանցքի մյուս կողմը: Ու հանկարծ Ամուլ սարից պոկված բուքը ոռնոցով ցրիվ տվեց մեր շարքերը: Ընկանք ձյան հյուսքի մեջ, կորցրինք իրար:

— Օգնեցե՜ք կանանց, երեխաներին, տղե՜րք, — գոռաց նախագահը և Սմբատի, Միսակի, Գեղամի, Գարեգինի հետ գործի անցավ: Բայց բուքը հետզհետե ավելի սաստկացավ, և մենք այլևս իրար չէինք տեսնում: Մի քանիսի հետ ես էլ գլորվեցի ձորակը: Մի կերպ պատսպարվեցինք ձորի խանդակում:

— Է՜ հե՜յ, սաս վե՜րը՜ն,— մեր ականջներին հասան օտար ձայներ:

Եվ քիչ անց մեզ օգնության եկան Սարավան և Քոչբեկ գյուղերի ադրբեջանցի բարեկամները:

— Մի վախեցեք, մենք կգտնենք բոլորին,— ասացին ու իջան ձորն ի վար: Ես էլ՝ նրանց ետևից: Շիրխանը, Իմանկուլին, Հուսեյնը, Մուսան, Խալիլ Մահլիմը, Մաստալին և մյուսները մի ժայռակոփ ծերպում գտան պատսպարված քսանից ավելի կանանց ու պատանիների: Մայրս նրանց հետ էր: Ադրբեջանցի քիրվաների առաջարկով բոլորս ձյան վրայով սահելով իջանք ձորը ու նրանց բացած արահետով հասանք գյուղ: Գիշերեցինք մեր քիրվաների տներում:

Մորս և ինձ հյուրընկալեց Նարգիզ բաջին՝ ասող-խոսող, մի տարեց կին, որի երեք տղաներից ավագը պատերազմից տուն էր եկել շինելի աջ թևը դատարկ, փոքրի «սև թուղթն» էր ստացել:

— Մի տնից, մի շեմից չենք, բայց մի օրի ենք,— ասաց մորս և մեր առջև դրեց վահանաձև սաջի շուրթից նոր պոկված կլոր բոքոնը:

— Կերեք, ուժ հավաքեք: Ախր առավոտը երկա՞ր ճանապարհ պիտի կտրեք... Շուտով կվերջանա էս անիծված պատերազմը ու բոլորիս առաջ էլ մի դուռ կբացվի:

Այսպես մայրն է խոսում, խոսում հավատով, հուսով, սրտի ձայնին ունկնդիր:

Միակ ու նեղ արահետով մարդկանց բեռնատար շարանի ծայրը գյուղատակ հասավ: Հասավ ու կանգ առավ Միրզայենց ընկուզենիների մոտ:

— Ինչո՞ւ, ի՞նչ է պատահել,— հետաքրքրվեցին ետևից եկողները:— Ինչո՞ւ են առաջներս փակել... Երևի էլի մեկնումեկի «սև թուղթն» են բերել:

Գյուղի ղեկավարներն այլ խոսակցություն սկսեցին առաջամասի տղամարդկանց հետ:



— Գարին պետք է տանել պահեստ:

— Չե՛մ տա, աստված էլ գա, չե՛մ տա,— լաչակը գլխից պոկելով բղավեց Նոյեմզարը:— Ամուսինս, որդիս այնտեղ արյուն են թափում, ես բքերի մեջ խեղդվելով մի բուռ գարի եմ հասցրել, որ պահեստ տանե՞մ: Չե՛մ տա, աստված էլ որ գա, չե՛մ տա,— ասաց ու տնքալով անցավ ղեկավարների կողքով:

Մի պահ քար լռություն տիրեց: Յուրաքանչյուրն ինքն իր հետ կռիվ էր տալիս, նախագահի պահանջը համարում անիրավություն:

— Ընկերներ, սիրելի քույրեր, ախր գյուղում մոտ 35 ընտանիք մի հատիկ ուտելու բան չունի... իսկ երեկ երկու երեխա ենք թաղել...

Մի անասելի վայնասուն, մի էլեկտրական ալիք կտրեց անցավ բոլորիս միջով, ամբողջ շարքով: Ոչ ոք չհամարձակվեց հարցնել մահացած երեխաների անունները: Մայրս քառապատկվեց ու շալի ծոպերը մոտեցրեց աչքերին, հեկեկաց:

Մարդիկ վշտից կուչ եկան: Շարքը ակամա թեքվեց դեպի պահեստի ճամփան:

Առավոտյան դպրոց գնացի: Ուսուցչուհի Արփիկ Գևորգյանը հագել էր ամուսնու բամբակյա բաճկոնը, գլուխը փաթաթել շալով: Ընդամենը չորս աշակերտով սկսեցինք դասը: Վառարանը ևս կուչ էր եկել ցրտից: Ես ցրտահարված մատներս էի տրորում ու մտածում մորս մասին: Նա վաղ առավոտյան գնաց ֆերմա: Եղբայրը ծանր վիրավորվել էր Գելենջիկի մոտ: Հարևանի տղայի «սև թուղթն» էր եկել: «Զոհվել է հերոսաբար»— գրված էր ծանուցագրում: Կանայք հավաքվել, լաց են եղել, մխիթարել մորը և առավոտյան հարևանուհու հետ ճամփել ֆերմա:

— Աշխարհը մեծ է, Գուլգազ քույրիկ, յոթից մեկը դուրբան հայրենիքին, վեցը Հիտլերի բուկը կպատռեն և վրեժը կհանեն,— սրտապնդում էին հարևանուհիները:

Երեկոյան մեծ ու փոքր, իրենց սովորության համաձայն, հավաքվել էին գյուղամիջի սյունից կախված բարձրախոսի տակ և անհամբեր ըսպասում էին Սովինֆորմբյուրոյի հաղորդագրությանը:

«Ուշադրություն, ուշադրություն, խոսում է Մոսկվան, խոսում է Մոսկվան: Համառ ու տևական մարտերից հետո մեր զորքերը ավարտեցին Ստալինգրադի մոտ շրջապատված գերմանաֆաշիստական զորքերի ջախջախումը...»:

Բոլորը, ասես, մոռացած օրվա զրկանք ու վիշտ, թեթևացած շունչ քաշեցին ու ապրեցին իրենց որդիների հաղթանակի բերկրանքով...

Ծննդավայրը մի անանուն քաղցրություն ունի: Ես միշտ ակնածանքով եմ ոտք դնում հայրենի գյուղի շեմին: Օձապտույտ կեռմաններից հետո գյուղը մեկեն երևում է՝ թաղված ծառաստանների մեջ: Յոթ բլուր, յոթ թաղ: Ամեն տարի գյուղը մի թաղով մեծանում է, ձորն ի վեր երկարում ու «սպառնում» եգիպտացորենի դաշտերին:

— Հարյուրից ավելի դիմում կա, տնատեղ են ուզում,— ուսերը թոթվում է պետտնտեսության դիրեկտոր Արտավազդ Մարկոսյանը: Երկու «Մարտական փառք»-ի, «Պատվո նշան» շքանշանների ասպետը նեղվում է հողի պակասությունից:— Ով քաղաք էր գնացել, վերադառնում է: Երեկ էլ նկարիչ Արտաշես Հովնանյանը եկավ, տուն գնեց: Հետո հիացած եզրակացնում է. «Այս գեղեցիկ բնության և բարի մարդկանց մեջ կարելի է հարյուր տարի էլ ապրել»:

Դիրեկտորը տնտեսության հաջողությունների մասին չի խոսում: Չի ասում, թե ինչպես անջրդի հողերի յուրաքանչյուր հեկտարից ամեն տարի 20—22 ցենտներ հացահատիկ են հավաքում, գետեզրյա մացառներն էլ քանդել ու վերածել են խնձորենու, տանձենու այգեստանների, տասը տարուց ավելի է, ինչ հիմնովին լուծվել է կերի կայուն բազայի հարցը:

Դիրեկտորը խանդաղատանքով պատմում է հողին ու ջրին, ծառ ու կանաչին հազար թելերով կապված ջահել սերնդի խինդաշաղախ առօրյայի, նրա բազում սխրանքների, գյուղի էլեկտրական սարքերի գործարանի, բանվորական կոլեկտիվի անդադրում ջանքերի, նուրբ ու բարդ հաստոցներով ստեղծված Ջառիթափ—Աֆրիկա կամրջի մասին, եղիցի լույս Ա. Ս. Գրիբոյեդովի՝ են անիրավ Շահնշահի ճանկերից փրկած մեր պապերի կարգ ու սովորույթների ճոխացման, արմատներով դարերի խորքում թաղված տոհմածառերի, Վայոց ձորը պատած նրանց դալար սաղարթների մասին:

Է՛հ, ի՞նչ իմանար Ալեքսեյ Մովրովը (այդպես էին անվանում մեր պապերը Ա. Ս. Գրիբոյեդովին), որ Փշոնքի սուրբ Աստվածածին մատուռի բակում կանգնեցված խաչքարը իր լուսե հիշատակի հարգանքի տուրքն է դառնալու, իսկ գյուղի դպրոցում Վահան վարժապետի բեմադրած «Խելքից պատուհասը»՝ սերունդների սրտերում նրան հավերժացնելու երաշխիքը:

— Տնտեսության, դպրոցի բոլոր կադրերը, մասնագետները բարձրագույն կրթությամբ տեղացի, գյուղը սիրող մարդիկ են,— զրույցը երկարացնում է դիրեկտորն ու, խոսքը մի տեսակ բողոքի նմանեցնելով, ավելացնում,— բայց դի-

երեխաները կախվում են վզից ու ցույց տալիս թերթի կարմիր մատիտով ընդգծված տողերը՝ Ենոք Սմբատի Ենոքյանը պարգևատրվել է Ժողովուրդների բարեկամության շքանշանով:

Ոսկեհմա աշնանը ես հաճախ եմ լինում իմ ծննդավայրում: Ազիզբեկով—Նախիջևան լայնահուն մայրուղին անցնում է գյուղի նոր թաղամասով, ուր պետական տնտեսության երկրորդ մսուր-մանկապարտեզի նորակառույցը մանուկների աշխույժով է լցվել: Կողքի ընդարձակ տարածության վրա գյուղացիներից շատերի աչքն է մնացել, բայց չեն դիմում՝ տեղը զիջելով վաղվա մշակույթի պալատին: Ակումբի հին շենքը անցած ձմռան մի գիշեր այրվեց: Ողջ գյուղը օգնության հասավ, բայց փրկեց միայն կեսը: Մեծ ու փոքր կրակների բոցերից հանեցին գրադարանը: Հիմա գյուղի երիտասարդությունն իր ուժերով վերակառուցում է հրդեհված շենքը՝ մարզական դահլիճ դարձնելու համար:

Աշնանային այդ օրը մարդիկ խմբվել էին գյուղսովետի գործկոմի նորակառույց շենքի առջև: Նրանց մոտեցավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար Հր. Ոսկանյանը: Զառիթափցիները երկու տարի առաջ ծափահարել և իրենց քվեն էին տվել Կենտկոմի քարտուղարին՝ ՍՍՀՄ պետական իշխանության դեպուտատ ընտրվելու համար: Մարդիկ շրջապատել, հարցեր էին տալիս:

— Ինչպե՞ս եք ապրում,— իր հերթին հարցրեց Կենտկոմի քարտուղարը:

— Մեր գյուղն ուրիշ է, հարազատ,— խոսք բացեց կոմունիստ Ծովինար մայրիկը:— Գյուղացին պատվախնդիր է իր հողի նկատմամբ, թեև եղածը անջրդի է, քարքարոտ: Բայց մելիորացիոն ջոկատը մտել ու քարուքանդ է անում Փոսայգի, Սպիտակ խանդակ հանդամասերի բլուրներն ու ժայռերը: Հողերը բարեբեր կդառնան: Ու եթե այդպես շարունակվի, ապա մոտ 200 հեկտար մելիորացված հողերից առատ բերք կստացվի:

— Գյուղում այսօր յոթ հարսանիք կա,— ուրախությամբ հայտնում է դիրեկտորը,— չըգիտեմ, որին մասնակցեմ:

Նա հիշատակում է մարման ենթակա այն օջախները, որոնք այսօր կանաչ շիվեր են տվել ու ո՞վ գիտե որերորդ հարսանիքն է թնդում նրանց նորակառույց հարկի տակ: Մենք բարձրանում ենք գյուղի ասֆալտապատ հրապարակը, որը երիզած ուղենիշ բարդիների արանքից ժպտում է փոստի երկհարկանի շենքը՝ 500 համարանոց հեռախոսակայանով: Փողոցի աջ կողմում հանրախանութն է՝ քարաշեն, մթերային խանութը, միջնակարգ դպրոցի, մանկապարտեզի, հիվանդանոցի, ճաշարանի, կենցաղի տան գեղեցիկ շենքերի շարանը զարդարել է ամբողջ ասֆալտապատ փողոցը: Իսկ դեպի արևը նայող մշտադալար եղևնիների արանքում մեծ Հայրենականում զոհվածների հուշարձանն է: Արա Շիրազի երկնած պղնձակոփ զինվորը, սուրը փառքով պատյան դնելուց հետո, հանել է սաղավարտը և գլխիկոր կանգնել 104 զոհված ընկերների աճյունի առջև: Նրա սև աչքերում կրակ կա, խրոխտ դեմքին՝ գալիքի հավատ:

Մեկեն հրապարակ են մտնում հարսանքավորները: «Գյոնդը» քայլ առ քայլ երկարում ու բոլորում է հրապարակը: Յոթ պտույտ... զուռնաչի եմ ասում, որ դիմանա: Բազմությունը կիսվում է: «Ոսկան ախպերը» շվիի բերանով ծոր է տալիս: Հարսն ու փեսան դանդաղ քայլերով մոտենում են անմահների հուշարձանին, խոնարհում գլուխները և հուրհրացող մեխակներ դնում մարմարյա պատվանդանին:

Բոցկլտում է հավերժության կրակը:

Նոր շեն է ծնվում գյուղում: Պապերին, ավագներին փոխարինող մի ողջ սերունդ:

Թնդում է «Քոչարին»: Ապրելու, գոյատևելու կանչով փոթորկվում են մարդիկ: Խմում են, խմում թասով, թե բաժակով, չեն հարբում, չեն օրորվում:

Նրանք 104-ի կորուստը սրտներում, քարը քարին են դնում, սերմը հողին հանձնում, ժայռը ճեղքում, վազ են դնում, լեռնալանջերը պատում այգիներով, տունը լցնում մանկան ճիչով...

Ես ուշադիր նայում եմ բազմությանը, որոնում այն ահեղ օրերի մարդկանց:

— Ծերացել են,— հուշիս թելը կտրում է Արտավազդը:

«Ծերացել են»— կրկնում եմ մտքումս: Ծովինարի, Սաթենի, Ալեքի, Հայկանդուխտի տանը կրակ գցեիր, մշահոտ չէր ելնի, իսկ այսօր շեն գերդաստանների տատիկ-պապիկ են:

«Ով հույս ուներ մեր անտեր որբերին հացի հասցներ: Ցեն մնա մեր կուսակցությունը,— հիշեցի խմբագրությանը գրած Ծովինար մայրիկի նամակի տողերը,— ամուր բռնեց մեր կռներից ու տան, ունեցվածքի տեր դարձրեց: Գյուղով մեծացանք, գյուղով շենացանք»:

...Եվ կռիվը շարունակվում է:

Ապրելու կռիվ:

Հողը չայրիացնելու կռիվ:

Գյուղը, հայրենին շենացնելու կռիվ:

Զ. ԱՍԼԱՆՅԱՆ
Ազիզբեկովի շրջանային «Ջերմուկ» թերթի խմբագիր

Ազիզբեկով—Զառիթափ

# ՃՇՄԱՐՏՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ԿԵՂԾԻՔԸ ՄԱՐԴՈՒ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ԱԼԻ ԻԼԵՐԻ
Թուրքիայի կոմկուսակցության Կենտկոմի անդամ,
հանդեսի խմբագրական խորհրդում
ԹԿԿ–ի ներկայացուցիչ

ԱՆՑՅԱԼ ՏԱՐՎԱ ՎԵՐՋԻՆ Անկարայում տեղի ունեցավ հերթական դատավարությունը, որը ժամանակակից Թուրքիայի ծայրահեղ հետադիմական դատավարության մռայլ ֆոնի վրա անգամ չի կարելի դիտել այլ կերպ, քան մի հրեշավոր կամայականություն: Այս անգամ դատական հետապնդության են ենթարկվել 56 հայտնի հասարակական գործիչներ, որոնց «մեղքն» այն է, որ նրանք թուրք մտավորականության 1.236 աչքի ընկնող ներկայացուցիչների թվում հանրագրով դիմել էին երկրի ղեկավարությանը: Հանրագրի հեղինակները (դրանց թիվը հետագայում աճեց ու հասավ մինչև 1.383-ի) իրենց մտահոգությունն էին հայտնել այն բանի համար, որ Թուրքիայում ոտնահարվում են տարրական դեմոկրատական իրավունքներն ու ազատությունները, իշխանություններին կոչ էին արել ներումն շնորհել քաղբանտարկյալներին, դադարեցնել հարցաքննությունների ժամանակ մարդկանց նկատմամբ կիրառվող խոշտանգումները, դաժան վերաբերմունքը կալանավորների հետ: Նրանք առաջարկել էին վերացնել արտակարգ ռազմական դրությունը, քաղաքացիների համար ապահովել քաղաքական կյանքին ազատ մասնակցելու իրավունք: Եվ... իրենք հայտնվեցին մեղադրյալների աթոռին:

Մարդու հիմնական իրավունքների ու ազատությունների պաշտպանությամբ հանդես եկող թուրք մտավորականների դատավարությունը մի անգամ ևս հաստատում է, թե որքան իրավացի էր մեր կուսակցությունը, երբ նախազգուշացնում էր այն պատրանքների խաբուսիկության մասին, թե իբր Թ. Օզալի քաղաքացիական կառավարության իշխանության գլուխ անցնելը կծառայի բռնակալական ռեժիմի մեղմացմանը: Առաջվա նման մեր երկրում տիրում է օտարերկրյա և տեղական մոնոպոլիստական կապիտալի առավել հետադիմական, առավել ագրեսիվ շրջանների իշխանությունը, որը հենվում է ուղղակի տեռորի վրա: Քաղաքացիական կառավարության ստեղծումը, որը վայելում է միջազգային իմպերիալիստական շրջանների, ամենից առաջ ԱՄՆ-ի շրջանների, աջակցությունը, գեներալ Ք. Էվրենի զինվորական խունտայի հետ միասին, որը շարունակում է երկրում իշխել 1980 թվականի զինվորական հեղաշրջման ժամանակից, ավելին չէր, քան կեղծ պառլամենտական քողի տակ վարչակարգը կայունացնելու փորձ:

Թուրքիայի նահանգների մեծ մասում և բոլոր հիմնական քաղաքներում պահպանվում է ռազմական դրությունը: Արգելված են առաջադիմական կուսակցություններն ու կազմակերպությունները, նրբին օրենսդրությունը անհնարին է դարձրել գործադուլներն ու արհմիությունների այլ գործունեություն, մտցված է դաժան գրաքննություն: Ձախ կուսակցությունների, արհմիությունների, դեմոկրատական այլ կազմակերպությունների տասնյակ հազարավոր ներկայացուցիչներ բանտերն են նետվել: Կոնվեյերի նման կայացվում են անարդարացի ու անողոք դատավճիռներ: «Քայքայիչ և հակապետական գործունեության» անհեթեթ մեղադրանքով Ստամբուլի ռազմական դատարանը խաղաղության կողմնակիցների ընկերության մի խումբ ակտիվիստների, ընկերության նախագահ Մ. Դիքերդեմի հետ միասին, դատապարտել է զանազան ժամկետների բանտարկության: Երկրի դեմոկրատական ուժերի համառ բողոքների և միջազգային լայն համերաշխության շնորհիվ հաջողվեց անարդարացի ու երկարատև բանտարկությունից ազատել խաղաղության մարտիկների մի մասին, այդ թվում և Դիքերդեմին: Դրա հետ մեկտեղ այժմ սկսվել է ձերբակալությունների,

խոշտանգումների, մահապատիժների նոր ալիք: Խոշտանգումներից զոհվածների թիվը անցել է 150 մարդուց: Գլխավոր շտաբի պաշտոնական ներկայացուցիչն անգամ խոստովանել է, որ «53 ձերբակալվածներ մահացան խոշտանգումների հետևանքով»:

Բռնությունների է ենթարկվում նաև քուրդ բնակչությունը: Տասնամյակներ շարունակ նա ենթարկվում էր սոցիալական և ազգային ճնշման: Այժմ ներկայիս վարչակարգը անցել է ուղղակի տեռորի: Իրաքի հետ ունեցած սահմանի վրա և նույնիսկ նրա տարածքում Թուրքիայի անցկացրած ռազմական գործողությունների ընթացքում քուրդ գյուղացիները ենթարկվեցին խոշտանգումների ու բռնի տեղահանության: Շարունակվում է Կիպրոսի մի նշանակալի մասի ապօրինի օկուպացիան Թուրքիայի զորքերի կողմից, որը խոչընդոտում է երկրի միասնությունը վերականգնելու բնակչության ձգտումներին:

Քաղաքական ռեակցիան ուղեկցվում է աշխատավորների կենսամակարդակի վրա կատարվող հարձակմամբ: 3,7 միլիոն մարդ, կամ աշխատունակ բնակչության մինչև հինգերորդ մասը, աշխատանք չունի: Ինֆլյացիան հասնում է 50 տոկոսի: Միլիոնավոր թուրքեր փաստակ որոնելու համար ստիպված մեկնել են կապիտալիստական ուրիշ երկրներ, որտեղ գտնվում են օտարերկրացի բանվորների իրավազուրկ դրության մեջ:

ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ԻՆՖՈՐՄԱՑԻԱՅԻ բուրժուական միջոցները, որոնք ամեն կարգի պատրվակներ են որոնում ու հորինում սոցիալիստական պետությունների դեմ ուղղված մեղադրանքների համար, գերադասում են ուշադրություն չհրավիրել Թուրքիայում դեմոկրատական իրավունքների ու ազատությունների ամենակոպիտ խախտումների վրա: Դրա փոխարեն շեշտը դրվում է ներկայիս վարչակարգի կեղծ դեմոկրատական մանևրների վրա, որը համապատասխանում է ՆԱՏՕ-ի երկրների մեծ մասի պաշտոնական շրջանների դիրքին, որոնք աջակցություն են ցույց տալիս նրան՝ չնայած նրա վարած ռեպրեսիվ քաղաքականությանը: Հենց նրանք էին իր ժամանակին խոչընդոտ հանդիսանում Թուրքիայի վտարմանը Եվրոպական խորհրդից: Եվ ներկայիս թուրքական վարչակարգը ամենից առաջ խրախուսում են Վաշինգտոնում:

Հանդես գալով հակակոմունիստական «խաչակրաց արշավանքի» դրոշի ներքո, Ռ. Ռեյգանի վարչակազմը փաստորեն հավանություն է տվել Թուրքիայում հայրենասերների հալածանքներին: Այդ բանը ցուցադրեց անցյալ տարվա ամռանը մարդու իրավունքների և հումանիտար հարցերի գծով ԱՄՆ-ի պետական քարտուղարի օգնական Է. Աբրամսի այցը Անկարա: Վաշինգտոնցի չինովնիկը թուրքական մայրաքաղաքում կարդաց մի դասախոսություն, որի մեջ ձևակերպեց Միացյալ Նահանգների իշխանությունների պաշտոնական քաղաքական հավատամքը, որի համաձայն մարդու իրավունքների պաշտպանումից վեր պետք է դասել պայքարը կոմունիզմի դեմ: Գլխավոր պարտականությունը մարդու իրավունքների հարցում,— բարբառում էր Է. Աբրամսը,— հակազդեցությունն է կոմունիզմի հարձակմանը: Այդ բնագավառի այն քաղաքականությունը, որը հակակոմունիստական չէ, նրա խոսքերով, չի կարող լուրջ քաղաքականություն լինել: Առանց մազաչափ անգամ շփոթվելու, նա թուրքական ղեկավարությանը կոչ արեց ուշադրություն չդարձնել այն քննադատությանը, որով հանդես են գալիս դեմոկրատական հասարակայնությունը, իսկ երբեմն նաև որոշ պաշտոնական գործիչներ Եվրոպայի կապիտալիստական երկրներում: Վերջիններս, իբր, չեն նայում քարտեզին և հաշվի չեն առնում Թուրքիայի աշխարհագրական դիրքը, որը «պաշտպանում է» ՆԱՏՕ-ի հարավային թևը:

Արտահայտությունն անպատկառ է և բավական պարզ: Ամենևին էլ մարդու իրավունքների պահպանությամբ չեն մտահոգված թուրքական ռեակցիայի անդրօվկիանոսյան խրատատուները: Նրանց անհանգստացնում է «կոմունիզմի հարձակումը»: Եթե այս արտահայտությունը Սպիտակ տան քաղաքական լեզվից, որտեղ ընդունված է սևը անվանել սպիտակ, թարգմանենք սովորական լեզվի, ակնհայտ կդառնա. Վաշինգտոնի անհանգստությունն առաջացել է այն բանից, որ Թուրքիայի ավելի ու ավելի մեծ թվով ընչազուրկ և իրավազուրկ քաղաքացիների, որոնք զրկված են տարրական քաղաքական իրավունքներից, աշխատանքից, ապագայից, գրավում է սահմանակից սովետական սոցիալիստական հանրապետությունների՝ Վրաս-



տանի և Հայաստանի, ժողովրդական Բուլղարիայի նոր կյանքի օրինակը: Նրանք տեսնում են, որ այնտեղ, ինչպես և ընդհանրապես սոցիալիստական ընկերակցությունում, չկան գործազուրկներ, անապաստաններ, բժշկական օգնության բացակայությունից մահացողներ: Ծնողներն այնտեղ իրենց մի պատառ հացից չեն զրկում, որպեսզի գոնե տարրական կրթություն տան երեխաներին՝ դպրոցները բաց են բոլորի համար: Խաղաղության մարտիկներին բանտերը չեն նետում, կառավարության հասցեով գրվող նամակի հեղինակները դատարան չեն ընկնում: Սոցիալիզմի աշխարհում ապահովված են սոցիալական արդարությունը և վստահությունը ապագայի նկատմամբ, այնտեղ աշխատավոր մարդը կյանքի իսկական տերն է:

Իմ համաքաղաքացիների մեծ մասը հնարավորություն չի ունեցել և հիմա էլ չունի կարդալու Վ. Ի. Լենինին, որը արդեն սովետական իշխանության գոյության արշալույսին ընդգծում էր, որ այդ իշխանությունը աշխատավորների համար ապահովել է «դեմոկրատական իրավունքներից և ազատություններից օգտվելու այնպիսի փաստական հնարավորություն, որպիսին դեռ երբեք չի եղել, նույնիսկ մոտավորապես, ամենալավ և դեմոկրատական բուրժուական հանրապետություններում» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 37, էջ 617): Սովետական Միության, սոցիալիստական մյուս երկրների օրինակով աշխատավոր մարդիկ աշխարհում ամենուրեք տեսել են, որ անհատի ազատությունը, ինչպես առանձին մարդու, այնպես էլ ժողովուրդների իրավունքների պահպանումը կապված են նախ և առաջ ճնշման ու շահագործման բոլոր ձևերի վերացման հետ:

Հենց ազգային և սոցիալական ազատագրության համար, հասարակական կյանքի սոցիալիստական վերափոխման համար ժողովուրդների ծավալած շարժումն է, որ պաշտոնական Վաշինգտոնն անվանում է «կոմունիզմի հարձակում»: Հենց այդ «հարձակումն» էր, որ նա փորձում էր կասեցնել Վիետնամում՝ ռումբերով, Չիլիում՝ ֆաշիստական հեղաշրջումով, Գրենադա կատարած ավազակային ներխուժմամբ, ջանում է սոմոսական ջարդարարների ձեռքով խեղդել Նիկարագուայում, բասմաչ բռնադատիչների միջոցով՝ Աֆղանստանում, զինվորական «գորիլաների» միջոցով Սալվադորում և Գվատեմալայում: Ամենևին պատահական չէ, որ ՄԱԿ-ում ԱՄՆ-ի ներկայացուցիչ Ջ. Կիրկպատրիկը բացահայտորեն հայտարարեց, որ Ռեյգանի վարչակազմը և գեներալ-դիկտատոր Պինոչետի վարչակարգը գործում են «միևնույն դիապազոնով» ընդդեմ «մարքսիստական էքսպանսիոնիզմի»: Հենց այդ պատճառով էլ փոխանակ դատապարտելու իսրայելական ագրեսորներին, որոնք արյունահեղ հաշվեհարդար են տեսնում պաղեստինցիների և լիբանանցիների հետ, կամ հարավաֆրիկյան ռասիստներին, որոնք բռնության և ապարտեիդի ամոթալի սիստեմի օգնությամբ գաղութային ստրկության մեջ են պահում տեղական բնակչությանը, ԱՄՆ-ը զենք ու փող է մատակարարում նրանց, դառնալով հանցավոր քաղաքականության մեղսակից: Հովանավորելով դիկտատորական վարչակարգերը ամբողջ աշխարհում, ամերիկյան իմպերիալիզմը հանդես է գալիս որպես մարդու իրավունքների, ժողովուրդների անկախության խեղդիչ: Տեռորիզմը ազատասեր ժողովուրդների ու պետությունների դեմ Վաշինգտոնում բարձրացվել է պետական քաղաքականության աստիճանի:

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՍԱՐԱԿԱՅՆՈՒԹՅՈՒՆԸ վճռականորեն դատապարտում է իմպերիալիստական ռեակցիայի հանցագործությունները, այդ թվում մարդու իրավունքների ոտնահարումը կապիտալի աշխարհում: Բողոքի այս օրինաչափ դրսևորմանը բուրժուական քաղաքագետները կցանկանային հակադրել կապիտալիստական կառավարությունների կեղծ «հոգատարությունը» մարդու իրավունքների մասին, որոնք իբր խախտվում են սոցիալիզմի երկրներում, որը լոկ մի ձև է նրանց ներքին գործերին միջամտելու համար:

Միջազգային հարաբերությունների տեսությունն ու պրակտիկան ելնում են այն բանից, որ մարդու իրավունքները նախ և առաջ պետությունների ներքին իրավասության առարկա են և ապահովվում են ներպետական միջոցառումների շնորհիվ: Այս դրույթը արտացոլում է գտել Եվրոպայի անվտանգության և համագործակցության խորհրդակցության Եզրափակիչ ակտում, որտեղ ընդգծվում է, որ մասնակից պետությունները «հարգելու են իրենց քաղաքական, սոցիալական, տնտեսական և կուլտուրական սիստեմները ազատորեն ընտրելու և զարգացնելու փոխադարձ իրա-

վունքը, հավասարապես նաև իրենց օրենքներն ու վարչական կանոնները հաստատելու իրավունքը» (Konferenz über Sicherheit und Zusammenarbeit in Europa. Schlussakte. Prag. S. 3)։ Ինտերվենցիայի և պետությունների ներքին միջամտության անթույլատրելիության մասին ՄԱԿ-ի դեկլարացիայում, որը ընդունվել է 1981 թվականին, նրանց պարտականությունների մասին ուղղակի ասված է՝ «խուսափել մարդու իրավունքների վերաբերյալ հարցերը պետությունների ներքին գործերին միջամտելու համար որպես միջոց օգտագործելուց կամ խեղաթյուրելուց...» (Resolutions and Decisions adopted by the General Assembly. From 15 September to 18 December 1981. Department of Public Information. Press Section. United Nations. New York, 1982, p. 157)։

Իմպերիալիստական քաղաքագետները (և այստեղ տոն են տալիս Վաշինգտոնի ներկայացուցիչները) փորձում են լռության մատնել կամ խեղաթյուրել այդ դրույթները, քանի որ Միացյալ Նահանգների ու նրանց դաշնակիցների մոտեցումը մարդու իրավունքների հարցերին խիստ հակասության մեջ է գտնվում հիշյալ փաստաթղթերի հետ, խախտում է միջազգային հաղորդակցման հանրաճանաչ նորմաները։ Քողարկվելով մարդու իրավունքների մասին կարծեցյալ հոգատարությամբ, վաշինգտոնյան կառավարիչները նպատակ են հետապնդում խարխլել պետությունների խաղաղ գոյակցությունը, թուլացնել սոցիալիզմը և բոլոր առաջադեմ ուժերը, աշխարհին պարտադրել իրենց պատկերացումը իրավունքների և ազատությունների մասին։

Այսպես կոչված «ստրկացված երկրների շաբաթվա» հերթական փարսի ընթացքում անցյալ տարվա ամռանը Սպիտակ տան տերը վերամբարձորեն հայտարարում էր, որ իբր ԱՄՆ-ը «պարտավոր է և կդատապարտի բոլոր բռնակալական վարչակարգերը, որոնք քաղաքացիներին զրկում են մարդու իրավունքներից, լինեն դրանք աջ թե ձախ ուղղության դիկտատուրաներ» (International Herald Tribune, July 17, 1984)։ Իմպերիալիստական տրամաբանությամբ, պարզվում է, որ դրանց թվին են պատկանում ոչ թե ֆաշիստական և զինվորական դիկտատուրաների ճնշման տակ հեծող Չիլին, Պարագվայը կամ Թուրքիան, այլ... Արևելյան Եվրոպայի ժողովուրդները, որոնք իրենց մոտ հաստատել են սոցիալիստական հասարակական կարգ։ Հազիվ թե որևէ մեկը հանձն առնի որոշելու, թե Ռեյգանի տիպի բուրժուական քաղաքագետները որքանով են իրոք հավատում իրենց ասածին։ Դրա հետ մեկտեղ անօգուտ չէր լինի պատկերացնել, թե նրանք ինչ բովանդակություն են դնում «ազատություն», «դեմոկրատիա», «մարդու իրավունքներ» հասկացությունների մեջ։

Մոնոպոլիստական կապիտալի հետադիմական շրջանների դասակարգային դիրքավորումը մարդու իրավունքների նկատմամբ այլ է, կոմունիստներինը՝ միանգամայն այլ։ Բուրժուական դեմոկրատիան, որը աշխատավորների մեծամասնության նկատմամբ շահագործող փոքրամասնության տիրապետության մի ձևն է, երաշխավորում է առաջին հերթին բուրժուազիայի գլխավոր իրավունքը՝ մասնավոր սեփականության և ներդրած կապիտալից շահույթ ստանալու իրավունքը, մարդու կողմից մարդու շահագործման ազատությունը։ Սոցիալիստական դեմոկրատիան, լինելով ժողովրդական իշխանության ձև, ունի սեփական իդեալներն ու արժույթները, որոնք առավել էական բաներում չեն համընկնում կամ արմատապես տարբերվում են բուրժուական հասարակության իդեալներից։ Եվ տարբերությունն այստեղ ոչ թե քանակական չափի մեջ է (նույն իրավունքներն ու ազատություններն են, միայն «մի քիչ ավելի շատ»), այլ որակական չափի մեջ։ Սոցիալիստական երկրների սահմանադրություններում վավերագրված (երբեմն նույնիսկ բուրժուական սահմանադրություններում ընդունված համանման արտահայտություններով), այդ իրավունքներն ու ազատությունները հագեցված են դասակարգային միանգամայն այլ բովանդակությամբ։ Սոցիալիզմը դեմոկրատիզմը տարածում է և՛ լայնությամբ, և՛ խորությամբ, և ամենից առաջ հասարակական կյանքի վճռական ոլորտի՝ արտադրական հարաբերությունների վրա, իրականում երաշխավորում է այն։ Ոչնչացնելով արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը, նա աշխատավոր մարդկանց դարձնում է հավասար և շահագործումից զերծ։

Սոցիալիստական երկրներում ոչ ոք չի պնդում, որ դեմոկրատական նորմերի ու կարգերի հաստատման գործում իրենք արդեն արել են բացարձակապես ամեն ինչ։ Սոցիալիզմի օրոք ևս գոյություն ունեն որոշ սահմանափակումներ հանուն ամ-



բողջ հասարակության բարօրության։ Բայց, ինչպես հայտնի է, սոցիալիստական դեմոկրատիան, ներառյալ և անձնական ու հասարակական իրավունքների ու պարտականությունների հարաբերակցությունը, շարունակ զարգանում և կատարելագործվում է ի շահ աշխատավորական զանգվածների։ Դրանով նա ոչ թե «մոտենում է» բուրժուական դեմոկրատիային, այլ ընդհակառակն, որքան ավելի լրիվ է ապահովում աշխատավորների ազատություններն ու իրավունքները, այնքան նա ավելի է հեռանում շահագործողական հասարակության ներհատուկ կարգերից։ Քանի որ «մարդու իրավունքներն» իրենցից ներկայացնում են ոչ թե քայքայիչ գործողություններ, պատերազմի պրոպագանդա, հակասոցիալիստական և պոռնոգրաֆիական հրատարակությունների տարածում և այլն։ Սոցիալիզմի ժողովուրդների ու պետությունների իրավունքն է՝ իրենց և իրենց քաղաքացիներին պաշտպանել ամեն կարգի իմպերիալիստական մեքենայություններից, գաղափարախոսական դիվերսիաներից, հասարակական կյանքում նոր հասարակությանը խորթ բուրժուական բարոյականության արժեքներ արմատավորելու փորձերից։

Այդ ամենին աշխատավորների արմատական շահերը պաշտպանող սոցիալիստական պետության հակազդողությունը բուրժուական պրոպագանդան փորձում է մեկնաբանել որպես մարդու իրավունքների խախտում։ Ավելին, կապիտալիզմի և սոցիալիզմի օրոք այդ իրավունքների ու ազատությունների դասակարգային տարբեր բովանդակության առումով, բուրժուական հետադիմական քաղաքագետների տեսակետից դրանց «խախտում են» հանդիսանում սոցիալիստական հասարակարգում արտադրության միջոցների մասնավոր սեփականության իրավունքի բացակայությունը, «փող շինելու», քաղաքական ազդեցություն գնելու ազատության բացակայությունը և այլն։ Զարմանալի չէ, որ նման համատեքստում ԱՄՆ-ի իմպերիալիստական ինտերվենցիան Գրենադայում հռչակվում է որպես «փրկարար արշավանք»։ Կապիտալիստական «ազատությունները» պահպանելու համար իմպերիալիստական պետությունների կառավարող շրջանները, մի քանիսը ավելի մեծ, մյուսները՝ ավելի փոքր չափով աչքերը փակում են Թուրքիայում մարդու իրավունքների աղաղակող խախտումների վրա։ Պակաս կարևոր չէ, սակայն, եթե այս կամ այն կապիտալիստական երկիրը, թեկուզ զգուշորեն, սահմանազատվում է դիկտատուրայի դաժանություններից։ Դա առաջադեմ ուժերի հետևողական ելույթների հետևանք է, թուրք ժողովրդի հետ, անմարդկային դիկտատուրայի դեմ նրա մղած պայքարի հետ միջազգային համերաշխության հաջողությունը։

Գիտակցելով բուրժուական դեմոկրատիայի դասակարգայնորեն սահմանափակ բնույթը, կոմունիստները ամենևին չեն նսեմացնում դրա նշանակությունը կապիտալիստական երկրների աշխատավորների համար։ Այդ երկրներից շատերում ժամանակակից դեմոկրատական հաստատությունները երկարատև ու համառ դասակարգային պայքարի արդյունք են։ Այդ հաստատությունների առաջացման վրա ազդել են նաև միջազգային այնպիսի գործոններ, ինչպես սոցիալիստական հեղափոխության հաղթանակը Ռուսաստանում, ՍՍՀՄ-ի վճռական ավանդը ֆաշիզմի ջախջախման գործում, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորումը, գաղութատիրության փլուզումը։ Այդ ամենը օգնեց աշխատավորներին, կառավարող դասակարգի կամքին հակառակ, հասնելու այն բանին, որ մի ամբողջ շարք ոչ միայն քաղաքական, այլև սոցիալ-տնտեսական իրավունքներ ու ազատություններ մտցվեն ազգային օրենսդրության մեջ։ Բայց դրանց ամենաբարձր մակարդակն անգամ կապիտալիզմի օրոք չի փոխում իշխանության էությունը։ Ուստի ձևականորեն հռչակված բուրժուական իրավական նորմերի հագեցումը իրական բովանդակությամբ, դեմոկրատական հաստատությունների օգտագործումը զանգվածների շահերի համար կախված են բանվոր դասակարգի գլխավորած դեմոկրատական լայն շարժման չթուլացող ջանքերից։

Այսօր մենք ականատես ենք այն բանի, թե բուրժուական ավանդական դեմոկրատիայի պայմաններում «մարդու իրավունքների» մասին խոսակցությունների ծխածածկույթի ետևում ինչպես են խիստ սահմանափակվում աշխատավորների առանց այն էլ կիսատ-պռատ իրավունքները։ Որպես դրա օրինակներ կարող են ծառայել հակասահմանադրական «պրոֆեսիայի արգելքները», որոնց Արևմտյան Գերմանիայում ենթարկված են առաջադեմ հայացքներ ունեցող հազարավոր մարդիկ, բրիտա-

նական գործադուլավոր հանքագործների կամ Գրինեմ-Կոմոն ռազմական բազայի մոտի խաղաղության ճամբարից կանանց ցրումը ոստիկանության կողմից, հակահրթիռային ցույցերի մասնակիցների հետապնդումը ԳՖՀ-ում և Իտալիայում, սոցիալական բողոքի ճնշումը Հյուսիսային Իռլանդիայում, դատարկ բնակարաններն զբաղեցնող անապաստանների ձերբակալությունները Հոլանդիայում և այլն:

Ամերիկյան իմպերիալիզմը՝ կապիտալիստական աշխարհի պարագլուխը, առաջատար դիրք է գրավում մարդու իրավունքների և ազատությունների ոտնահարման գործում: Քաղաքական ռեկլամի մասնագետները քիչ ջանք չեն թափել, որպեսզի ԱՄՆ-ի մասին ստեղծեն որպես «Արևմուտքի մեծ դեմոկրատիայի» երկրի տպավորություն: Սակայն ոչ մի գունազարդում ի վիճակի չէ սքողելու ռասիզմի, բռնության, կամայականության մոլեգնումը, որոնք գործադրվում են աշխատավորների դեմ՝ կապիտալի իշխանությունը պահպանելու համար:

Քաղաքական ազատությունների մարտիկ Լ. Պելտիերի գործը դարձյալ ամբողջ աշխարհի ուշադրությունը հրավիրեց քաղաքական դրդապատճառներով ԱՄՆ-ում հալածանքի ենթարկվողների նկատմամբ: Ահա արդեն ութ տարի է նա ձերբակալված է սպանության շինծու մեղադրանքով: Իսկ իրականում նրան բանտ են նետել այն պատճառով, որ նա՝ «ամերիկյան հնդկացիների շարժման» ղեկավարներից մեկը, ակտիվորեն մասնակցել էր Ամերիկայի տեղաբնիկների նկատմամբ Վաշինգտոնի կիրառած ցեղասպանության դեմ ծավալված պայքարին:

Քաջ հայտնի է, որ հալածանքների սպառնալիքը այսօր կախվել է ամերիկյան շատ քաղաքացիների գլխին, քանի որ քաղաքական հետախուզության, կոմպյուտերային տեխնիկայի օգնությամբ դժգոհ և իշխանությունների համար անցանկալի անձանց հայտնաբերման սիստեմը ընդունել է համապարփակ բնույթ: Քաղաքացիների անձնական և հասարակական կյանքին հետաքննությունների ֆեդերալ բյուրոյի, կենտրոնական հետախուզական վարչության, մյուս ծառայությունների ու գերատեսչությունների միջամտությունը, որը խախտում է սահմանադրական նորմերը, վիթխարի չափեր է ընդունել: Հետաքննությունների ֆեդերալ բյուրոն, օրինակ, դոսիեներ է պահում 34 միլիոն մարդու մասին: Եթե դրան ավելացնենք մատների դրոշմներ ունեցող 78 միլիոն քարտերն ու ամեն տեսակ «ինֆորմացիայի բանկերը», ապա փաստորեն ռեպրեսիվ ապարատը վերահսկողության տակ է պահում երկրի ողջ չափահաս բնակչությանը: Ամերիկյան մամուլը հաղորդել է, որ իշխանություններն սկսել են կազմակերպել համակենտրոնացման ճամբարներ «անհուսալիների» համար, որտեղ կարելի կլինի թաքցնել 25-հազարական մարդ:

Ինչպես և կապիտալիստական մյուս երկրներում, միլիոնավոր մարդիկ Միացյալ Նահանգներում մասսայական գործազրկության հետևանքով զրկված են աշխատանքի իրավունքից: Ճգնաժամի դժվարությունները ժողովրդական զանգվածների վրա բարդելը ուղեկցվում է արհմիությունների իրավունքների վրա կատարվող հարձակմամբ, գործադուլների ճնշմամբ:

Անցյալ տարվա դեկտեմբերին առաջադեմ մարդկությունը հերթական անգամ նշեց մարդու իրավունքների միջազգային օրը, որ ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեան սահմանել է 1948 թվականին մարդու իրավունքների ընդհանուր դեկլարացիայի ընդունման կապակցությամբ: Այս ելակետային միջազգային-իրավական փաստաթուղթը, որը վավերացրել է հիմնական նորմերի ու դրույթների մի ամբողջական կոմպլեքս, հիմք ծառայեց երկու միջազգային պակտեր մշակելու համար՝ տնտեսական, սոցիալական և կուլտուրական իրավունքների մասին, քաղաքացիական և քաղաքական իրավունքների մասին (1966 թվական): Սովետական Միությունը, սոցիալիստական մյուս երկրները վճռական ավանդ ներդրեցին երկու պակտերի նախապատրաստման գործում և կապիտալիստական շատ տերություններից առաջ վավերացրին դրանք: Հայտնի է, որ նրանք կանոնավոր կերպով զեկուցագրեր են ներկայացնում ՄԱԿ՝ մարդու իրավունքներին վերաբերող միջազգային համաձայնագրերի կատարման մասին: Այդպիսի հաշվետվությունները քննարկվում են բաց, դրանք մատչելի են բոլորի համար: Մինչդեռ ԱՄՆ-ը մինչև այժմ նույնիսկ չի էլ վավերացրել նշված պակտերը, ինչպես և երկու տասնյակ համանման այլ համաձայնագրերի մեծ մասը, որոնք կոչված են պահպանելու մարդու իրավունքները:

Մեր օրերում ամենից ավելի մեծ տագնապ է հարուցում մարդու ամենահիմնա-



կան՝ կյանքի իրավունքի համար սպառնալիքի ուժեղացումը, իրավունք, առանց որի ապահովման իմաստը կորցնում են մնացած բոլոր իրավունքները: Հենց այդ պատճառով էլ անհատի ազատության պրոբլեմը իր բոլոր կողմերով անխզելիորեն կապված է խաղաղությունը պահպանելու, պատմական պրոցեսը լիցքաթափման և խաղաղ գոյակցության ռելսերին վերադարձնելու անհրաժեշտության հետ: Բուրժուական պրոպագանդայի տարածած զրպարտանքը «սովետական ռազմական սպառնալիքի» մասին ու նրա կեղծիքը սոցիալիզմի օրոք մարդու իրավունքների խախտման մասին, մեկը մյուսին լրացնելով, կոչված են արդարացնելու պատերազմի նախապատրաստության ԱՄՆ-ի ու ՆԱՏՕ-ի կործանարար կուրսը:

Մենք՝ կոմունիստներս, համոզված ենք, որ խաղաղասեր ժողովուրդների միացյալ ջանքերով կարելի է սանձահարել ռազմատենչներին, պաշտպանել խաղաղությունը, պահպանել կյանքը երկրի վրա: Այդ համոզվածությամբ են տոգորված եղբայրական կուսակցությունների համագումարների և ղեկավար մարմինների որոշումները, դրանով է որոշվում նրանց պրակտիկ գործունեությունը: Արևմտյան Եվրոպայում ամերիկյան միջուկային հրթիռների տեղաբաշխման կապակցությամբ հրապարակած հատուկ դիմումի մեջ Թուրքիայի կոմկուսակցության Կենտկոմը բոլոր քաղաքացիներին կոչ արեց ակտիվ մասնակցություն ցուցաբերել խաղաղության պաշտպանության միջոցառումներին. «Եթե մենք չենք ցանկանում զոհվել միջուկային պատերազմում, մենք պետք է մոբիլիզացնենք բոլոր ուժերը, որպեսզի պաշտպանենք մեր կյանքի իրավունքը... Խաղաղությունը պաշտպանել կարելի է միայն նրա համար պայքարելով»:

**ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՇԱՀԵՐԻ** առավել հավատարիմ ու հետևողական արտահայտիչները՝ կոմունիստները, հանդես են գալիս նաև որպես անհատի իրավունքների ու ազատությունների ամենավճռական պաշտպաններ: Այդպիսի դիրքավորումը որոշվում է իրենց առջև նրանց դրած պատմական խնդրով՝ մարդկանց ազատել ճնշման ու շահագործման բոլոր ձևերից: Հենց այդ պատճառով էլ կոմունիստները կապիտալի աշխարհում պահանջում են պահպանել ու ընդլայնել աշխատավորների նվաճումները քաղաքական, տնտեսական և սոցիալական բնագավառներում, մերժում են մոնոպոլիաների ու բուրժուական պետության ոտնձգությունները դրանց դեմ:

Դա զգալի չափով որոշում է եղբայրական կուսակցությունների ստրատեգիան: Օրինակ, մարդու իրավունքների համար, իսկական ազատությունների և քաղաքական կյանքի դեմոկրատացման համար մղվող պայքարը որպես հիմնական խնդիր է բնութագրել Հարավային Ամերիկայի կոմունիստական կուսակցությունների խորհրդակցությունը, որը կայացավ 1984 թվականի հուլիսին Բուենոս Այրեսում: Մեր կուսակցությունը իր V համագումարում ժողովրդին կոչ արեց համազգային դիմադրություն ցույց տալ ամերիկյան իմպերիալիզմին ու նրա մարիոնետ՝ դիկտատորական վարչակարգին: «Միայն դիմադրությունը,— մատնանշեց ԹԿԿ-ի համագումարը,— մեզ հնարավորություն կտա ետ ստանալու մեզնից խլված դեմոկրատական ու տնտեսական իրավունքները»:

Թուրք կոմունիստներն ստիպված են գործել ընդհատակի դժվարին պայմաններում: Մարդիկ զրկված են կապիտալիստական երկրներում գոյություն ունեցող մի շարք քաղաքական ազատություններից՝ համոզմունքների, խոսքի, մամուլի, անձի անձեռնմխելիության ազատություններից: Մենք գտնում ենք, որ այդ ազատությունների համար մղվող պայքարում հաջողությունը վճռական չափով կախված է դեմոկրատական և հայրենասիրական բոլոր ուժերի համախմբումից: Այժմ երկրում պայմաններ են ստեղծվել այնպիսի լայն օպոզիցիա կազմելու համար, որը հանդես գա խաղաղության ու դեմոկրատիայի պաշտպանությամբ. ժողովուրդը ևս պատրաստ է աջակցություն ցույց տալու նրան: Ձգտելով հասնել ժողովրդի ամենալայն խավերի միասնության, ԹԿԿ Կենտկոմի II պլենումը որոշում ընդունեց ըստ ամենայնի ուժեղացնել ձախ ուժերի գործողությունների միասնության հետագա ամրապնդման ու ընդլայնման աշխատանքը, միաժամանակ ազգային-դեմոկրատական հիմքի վրա շարունակելով երկխոսությունը դիկտատուրայի դեմ հանդես եկող բոլոր շրջանների հետ:

Թուրքիայում դեմոկրատական կարգերի վերականգնման գործում անկասկած առաջատար դերը պատկանում է բանվոր դասակարգին՝ դիկտատորական վարչա-

Այս իմաստով սովորույթներ ստեղծած սերունդները, անշուշտ, ոչինչ չգիտեին տնտեսագիտության մասին: Նրանք միանգամայն անգրագետ մարդիկ էին, բայց այդ սերունդները, թող դա տարօրինակ չթվա, տնտեսագիտորեն բարձր կուլտուրա ունեին:

Ինչպե՞ս կարելի է այդ ֆոնի վրա գնահատել այն երիտասարդի արարքը, որը մի քանի տարի առաջ Երևանի փողոցներից մեկում մի գիշերվա ընթացքում ոչնչացրել է տասնյակ տնկիներ ու երիտասարդ ծառեր: Խոստովանում եմ, լսելով որևէ քաղաքում ապրող նման «հերոսների» կատարած այդպիսի արարքների մասին, խիստ ատելություն եմ տածում նրանց նկատմամբ: Հասարակությունը միանգամայն իրավացիորեն նրանց հանցագործներ է համարում: Նրանք միաժամանակ տնտեսագիտական առումով ծայրահեղ անկուլտուրական մարդիկ են:

Բայց եկեք ուշադրությունը չկենտրոնացնենք բարոյախոսական հարցերի վրա, քանի որ մեր զրույցում Ձեզ հետաքրքրում են հարցի հենց տնտեսագիտական ասպեկտները...

**Թղթ.**— Այո՛, Պավել Գրիգորևիչ: Միգուցե, զրույցի սկզբում Դուք պարզապես կթվարկեք այն կարևորագույն բաղադրամասերը, որոնց գումարը կարելի է անվանել «տնտեսագիտական կուլտուրա»...

**Բունիչ.**— Ըստ երևույթին, ամենից առաջ պետք է նշել տնտեսագիտական կրթվածությունը: Բայց կրթվածությունը ես համարում եմ ոչ թե պարզապես գիտելիքների գումար, այլ առավել առաջադիմական կոնցեպցիաների ընտրության ինչ-որ կողմնացույց: Չէ որ անհնա՞ր է ամեն ինչ իմանալ, նույնիսկ մի բնագավառի սահմաններում: Տնտեսագիտապես կուլտուրական մարդը, ղեկավարվելով առաջադիմական հայացքներով և ամենևին էլ ամենագետ չլինելով, կուահողաբար կարողանում է ընդունել ավելի կամ պակաս ճիշտ որոշումներ: Նշեմ նաև ամեն մի նորի դյուրըմբռնողությունը, ոչ պահպանողական և դինամիկ մտածողությունը:

Տնտեսագիտապես կուլտուրական մարդը կարողանում է օգտվել տնտեսագիտական հոգեբանության օրենքներից, հաշվի առնել պարտնյորների նկատառումները: Նա տիրապետում է խոսքի, մարդկային փոխհարաբերության կուլտուրային, համբերատար է, համեստ, սակայն իր խոսքը ևս չի համարում վերջինը, ինքնասիրահարված չէ և կարողանում է լսել:

Տնտեսագիտապես կուլտուրական մարդն իրեն դիտում է սոսկ որպես մի օղակ՝ անցյալ և ապագա սերունդների պատմական շարքում: Նրա մեջ կարծես առկա են նախորդ սերունդների ստեղծած հոգևոր ու նյութական արժեքները: Ճիշտ նույնպես նա ջանում է իր ամբողջ փորձը, գիտելիքները հաղորդել նոր սերունդներին:

Մարդը կարող է տնտեսագիտապես կուլտուրական համարվել, եթե նա աշխատում է խնայողաբար: Նա չի կարող հանդուրժել, երբ հողածածկ են անում բետոնը, հաստոցները և տրակտորները, նյութերն ու դետալները թողնում են անձրևի և ձյան տակ, երբ որևէ տեղ վատնում են հանրային միջոցները կամ էլ ակնհայտորեն ավելորդ ծախսեր են անում: Նա ակտիվորեն պայքարում է այդպիսի երևույթների դեմ: Տնտեսագիտապես կուլտուրական մարդը նույն կերպ էլ պայքարում է կյանքի նկատմամբ անտարբեր և պասիվ վերաբերմունքի դեմ: Նա անբանի, անբարեխղճի, գողի ու հարբեցողի անհաշտ հակառակորդն է...

Պարզ թվարկումով անհնար է հարցը սպառել: Որպեսզի մարդու մասին խոսենք որպես տնտեսագիտապես կուլտուրական աշխատողի, ապա հարկ կլինի շատ երկար թվարկել կոնկրետ հատկություններ: Մյուս կողմից, չպետք է մոռանալ, որ տնտեսագիտական կուլտուրան, ինչպես նաև ցանկացած այլ կուլտուրա, չի հանգեցվում մի քանի բաղադրամասերի զուտ թվաբանական գումարի, ինչքան էլ մեծ լիներ վերջիններիս քանակը: Կուլտուրան այդ բաղադրամասերի ամբողջության զարգացման որակական նոր աստիճանն է:

**Թղթ.**— Ձեր թվարկումից կարելի՞ է հետևություն անել այն մասին, որ մարդու տնտեսագիտական կուլտուրայի, դրա աստիճանի վերաբերյալ հնարավոր է դատել գլխավորապես աշխատանքի նկատմամբ նրա վերաբերմունքով:

**Բունիչ.**— Սոցիալիստական հասարակությունը, հոգ տանելով մեր առողջության, սննդի, ուսման, բնակարանի և ժամանցի մասին, ծախսում է շատ աշխատանք: Ահա և ստացվում է, որ մեր և ձեր վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ դառնում է



հասարակության նկատմամբ մեր վերաբերմունքի կարևոր խթանիչը, որի արդյունքներից բոլորն էլ օգտվում են:

Ինչպե՞ս է արտահայտվում այդ վերաբերմունքը: «Մերֆիի օրենքներից» մեկը, որ ի դեպ հեգնանք է պարունակում, հայտնում է. գոյություն ունի մարդկանց չորս տիպ՝ ով նստում է հանգիստ և ոչինչ չի անում, ով խոսում է այն մասին, որ հարկավոր է հանգիստ նստել և ոչինչ չանել, ով խոսում է այն մասին, որ պետք է անել և ով անում է:

Այնպես որ, աշխատանքի նկատմամբ մեր վերաբերմունքն արտահայտվում է ոչ թե դատարկ խոսքերով ու դեկլարացիաներով, այլ նրանով, թե մենք ինչպես ենք աշխատում: Որոշ ընթերցողներ կարող են առարկել. մարդը միայն աշխատանքով չի ապրում: Այո, մարդն, իրոք, բազմակողմանի էակ է: Բայց այնուամենայնիվ, չպետք է մոռանալ, որ աշխատանքը մեր սոցիալիստական հասարակության գլխավոր արժեքն է, որ հենց աշխատանքում են բացահայտվում ու կատարելագործվում մարդու հոգևոր կարողությունները:

Բայց հարկ է վերստին ընդգծել, որ մեր իդեալը, ինչպես ասում են, ոչ թե պարզապես ժրաջան, անդուլ աշխատավորն է, այլ աշխատավոր քաղաքացին, արարողը, որի համար աշխատատեղը հասարակության հետ անհատի միակցման հանգույցն է: Մեր ժամանակակցի համար առավել էական աշխատանքում մարդկանց օգտակար լինելու հնարավորությունն է: Հենց այդ հանգամանքն էին ամենից շատ ընդգծել երկրի գրեթե 20 քաղաքների բնակիչները, որտեղ անցկացվեց համամիութենական սոցիոլոգիական հետազոտություն: Հարցման ենթարկվածների 93 տոկոսն իրենց աշխատանքի այդ կողմը համարում են առավել կարևոր:

**Թղթ.**— Ձեր կարծիքով, ինչպիսի՞ փոխհարաբերության մեջ են նախաձեռնություն և ձեռներեցություն հասկացությունները:

**Բունիչ.**— Գիտական հանձնարարականների, առաջավոր փորձի հետ շաղկապված նախաձեռնությունը մարդկանց շրջանում և կոլեկտիվներում զարգացնում է աշխատանքային ու ստեղծագործական ակտիվությունը, նրանց հասցնում է հաջողության: Այդ հատկության մեջ է մարմնավորվում անձի սոցիալական ակտիվությունը: Նրանում բացահայտվում է նաև մարդու կենսական դիրքորոշումը:

Չգիտես ինչու, շատերը, հատկապես առանձին ղեկավարներ, այն կարծիքին են, որ իբր ձեռներեցությունը, որպես կանոն, հանգեցնում է խախտումների: Ամենևին էլ այդպես չէ: Դեռ ավելին, երբ ասում ենք, «ձեռներեց, գործնական մարդ», այդ հասկացության մեջ դնելով նորմալ, այլ ոչ թե քաղքենիական իմաստ, պետք է ամենից առաջ նկատի ունենալ նրանց, ովքեր նվիրված են մեր ընդհանուր գործին, ովքեր ցուցաբերելով նախաձեռնություն, չեն թաքնվում ուրիշների ետևում, իրենք են պատասխանում կատարածի համար և անմնացորդ նվիրվում են աշխատանքին: Իսկ կարգուկանոնից, օրենքից նահանջ լինում է ավելի հաճախ հենց այնտեղ, որտեղ մարդիկ ոչ մի նախաձեռնություն չեն դրսևորում: Բուն քարացած իրադրությունն է հանգեցնում դրան: Դա գործնական անգործություն է... Քողարկվելով՝ այդ երևույթը տակավին շարունակում է գոյատևել: Տեսնում ենք անբանի, սակայն միշտ չենք նրա երեսին ուղղակի ասում՝ դուք միայն առերևույթ եք աշխատողի տպավորություն թողնում, ձեր գործողությունները հիշեցնում են տեղում վազք. կամ գործն առաջ տարեք, կամ էլ տեղն ազատեք ավելի ձեռնհաս մարդու համար: Փորձեք հիշել ձեր կոլեկտիվում մի դեպք, երբ որևէ մեկին աշխատանքից ազատած լինեն կամ անբանության համար, կամ էլ պրոֆեսիոնալ անպետքության պատճառով: Կարծում եմ, դա ձեզ հազիվ թե հաջողվի: Ազատում են ցանկացած այլ պատճառներով: Դրա համար էլ մեզ մոտ անբանները, ցածր պրոֆեսիոնալ պատրաստություն ունեցող մարդիկ թափառում են մի կազմակերպությունից մյուսը, դրա համար էլ հանգիստ են նրանք, ովքեր իսկական գործարարությունը փոխարինում են շինծու ակտիվությամբ:

Այդ երևույթի դեմ համաժողովրդական պայքարն արդեն սկսվել է: Այն կշարունակվի և, ես կարծում եմ, կդառնա ավելի արդյունավետ: Այնպիսի պայմանների ստեղծումը, որոնք կխթանեին նախաձեռնությունն ու ձեռնահասությունը, նախատեսում է խոշոր մասշտաբի տնտեսափորձը՝ ուղղված ձեռնարկությունների իրավունքների ընդլայնմանն ու աշխատանքի արդյունքների համար դրանց պատասխանատվության բարձրացմանը: Ձեռնարկություններին տրված լայն ինքնուրույնությունը

ոչ այլ ինչ է, քան դրանցում աշխատող մարդկանց՝ և՛ ղեկավարների, և՛ ենթականերին տրված լայն ինքնուրույնություն: Ահա ասպարեզ, որտեղ իսկական գործարար մարդը կարող է դրսևորել իր ձեռնահասությունն ու նախաձեռնությունը:

**Թղթ.**— Գործարար մարդ, աշխատանքի գործարար ոճ... Արդյոք Ձեզ չի՞ թվում, որ ստեղծելով մարդու այդ տիպը, փոխհարաբերությունների այդ ձևը, մեր դինամիկ դարը կարծես թե մեզ հուշում է. լավ է այն աշխատողը, ով ապահովում է պլանի կատարումը, կարգուկանոնը, խաղաղ հարաբերություններ, ով գործընկերոջը վերաբերվում է այնպես, ինչպես վերջինս է վերաբերվում իր աշխատանքին, այլ խոսքով՝ «տեխնոլոգիական» մարդը:

**Բունիչ.**— Ես դեմ եմ այդպիսի մոտեցմանը: «Տեխնոլոգիական» մարդ արտահայտությունը բնութագրում է անհատի ամենևին ոչ բոլոր ընդունակությունները, որոնք դրսևորվում են աշխատանքի պրոցեսում: Այդ ոճը բացառում է մարդկային ջերմությունը: Իսկ վերջինիս պահանջը, թերևս, այսօր ավելի մեծ է, քան երբևէ:

Ժամանակակից արտադրական կյանքը երբեմն մարդուն առաջադրում է այնպիսի հոգեբանական բարդ խնդիրներ, որոնք անհնար է լուծել զուտ «գործարար» հատկություններով, միայն պրոֆեսիոնալ ունակություններով: Դրանց լուծման համար մարդը (ես նկատի ունեմ ոչ միայն տիեզերագնացներին, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների օպերատորներին կամ դերասաններին) պետք է օգտագործի իր անձի բոլոր ռեսուրսները, երբեմն շատ կարճ ժամանակում մոբիլիզացնի իր բոլոր հնարավորությունները: Եվ այդպիսի իրավիճակներում զուտ «տեխնոլոգիական» մարդն անխուսափելիորեն մղվում է երկրորդ պլան:

Նկատե՞լ եք արդյոք Դուք, թե մարդն ինչպես է ձգտում ընտանիացնել այն աշխարհը, որ աշխատանքում շրջապատում է իրեն: Նա փաղաքշական անուններ է տալիս մեքենաներին, բոլոր հրահանգներին հակառակ իր հետ տիեզերք է տանում ընտանեկան օջախի ջերմությունը հիշեցնող մի անմեղ գեղեցիկ իր, ավտոմեքենայի ճախցիկը զարդարում է ամեն տեսակի տիկնիկներով և վերարտադրանկարներով՝ ճաշակի ու դաստիարակության համեմատ: Ի՞նչ է թաքնված մեքենաների ու մեխանիզմների անշունչ աշխարհը ընտանիացնելու այդ ձգտման ետևում:

Առաջին. այդ աշխարհին հարմարվելու ցանկությունը, երկրորդ՝ պահպանել իր անհատականությունը: Այստեղից կարելի է միայն մեկ հետևություն անել. ժամանակակից իսկական արտադրությունը պարտավոր է հենվել ոչ թե պարզապես աշխատողի վրա, այլ անձի ու նրա առանձնահատկությունների վրա, պետք է «տեխնոլոգիայի» մեջ ներառնի մարդկային լավագույն հատկությունները: Եվ բնական է, որ տնտեսագիտապես կուլտուրական կարող է համարվել միայն այն ղեկավարը, որն իր աշխատանքում հաշվի է առնում այդ հանգամանքը:

Բայց, ցավոք սրտի, շատ հաճախ այստեղ գործում է մտածողության ոչ ճիշտ ստերեոտիպը: Դաստիարակչական աշխատանքի սուր ծայրը կոլեկտիվներում ուղղվում է միայն գործալիքների, հարբեցողների, աշխատանքային կարգապահությունը խախտողների դեմ, որոնք համարվում են աշխատաժամանակի կորուստների հիմնական մեղավորներ: Բայց, չգիտես ինչու, հաշվի չեն առնվում այն կորուստները, որոնցով փոխակերպվում են վատ տրամադրությունը, անվստահության ու անհարմարավետության զգացումը, աշխատողի ինքնազգացողության մասին հոգատարության բացակայությունը: Այդ կորուստները ոչ ոք չի հաշվել...

**Թղթ.**— Եթե ես Ձեզ ճիշտ հասկացա, ղեկավարի աշխատանքի ոճը Դուք համարում եք տնտեսագիտական կուլտուրայի բաղադրամասերից մե՞կը...

**Բունիչ.**— Կարևորագույն բաղադրամասերից մեկը...

**Թղթ.**— «Լենինյան ուղիով» ամսագրի ընթերցողների համար այդ թեման կարող է առանձնահատուկ հետաքրքրություն ներկայացնել...

**Բունիչ.**— Կառավարման պրոբլեմներով զբաղվող մասնագետները վերջին ժամանակներս ավելի մեծ ուշադրություն են նվիրում կոլեկտիվի նվաճումների, այնտեղ ստեղծված փոխհարաբերությունների բնույթի և ղեկավարի աշխատանքի ոճի, ամենօրյա գործունեության ընթացքում նրա կիրառած եղանակների ու մեթոդների միջև գոյություն ունեցող կապի վրա: Իզուր չեն ասում. ոճը՝ դա մարդն է: Եթե քո ենթակաները, նշվում է, օրինակ, ղեկավարներին ուղղված հանձնարարականներից մեկում, երբեք իրենց կարծիքը չեն արտահայտում, երբեք ուշադրության արժանի առաջարկություններ չեն անում, ապա դա նշանակում է, որ քո ղեկավարման ոճը կամայական է: Եթե քո ենթականերից որևէ մեկն ավելի մեծ լիազորություններ ունի, քան դու նրան տվել ես, ապա դա նշանակում է, որ քո ղեկավարումը թույլ է: Եթե քո ենթակաները չեն սիրում դուրս գալ շաբլոն ու ծեծված հարցերից, ապա դա նշանակում է, որ դու նրանց լավ չես սովորեցնում և դաստիարակում:



Ամեն մի տնտեսական ղեկավար ունի իր անհատական, անկրկնելի գծերը: Անտարակույս, մեկը մյուսից շատ բանով էին տարբերվում առասպելական դարձած այնպիսի տնտեսական ղեկավարները, ինչպիսիք են՝ ուժեղ կամքի տեր Օրջոնիկիձեն և բանվոր-ժողկոմ Թևոսյանը, «կարմիր դիրեկտոր» Լիխաչովն ու ակադեմիկոս Բարդինը, շատ ուրիշներ: Բայց նրանց բոլորին հարազատացրել է մի ընդհանուր բան՝ խորագույն կուսակցականությունը և անձնուրաց նվիրվածությունը ժողովրդին, նրա շահերին, մտածողության լայնությունը, նպատակներին հասնելու գործում պրոֆեսիոնալիզմը, գործարարությունն ու համառությունը, մարդկանց միավորելու և իր ետևից տանելու հմտությունը: Տնտեսավարման սովետական, սոցիալիստական ոճի այս գլխավոր գծերը նրանցից ժառանգություն են մնացել այսօրվա ղեկավարներին:

**Թղթ.**— Բայց տնտեսավարման նոր պայմանները անհամեմատ ավելի բարդացած են ու բազմատարբերակ տնտեսական իրադրությունն այսօրվա տնտեսավարներին առաջադրում է նոր խնդիրներ, որոնք երբեմն ավելի դժվար լուծելի են...

**Բունիչ.**— Տնտեսավարման ներկայիս ոճն անում է այն հիմքի վրա, որ կառուցել են առաջին ժողկոմներն ու դիրեկտորները, իր մեջ կրում է դրա լավագույն գծերը և միաժամանակ հարստացնում դրանք, զարգացնում՝ հաշվի առնելով տնտեսական կյանքի արմատապես փոփոխվող պայմանները:

Այդ փոփոխությունների էությունը էկոնոմիկան գերզանցապես ինտենսիվ զարգացման ուղու վրա փոխադրելն է: Տնտեսագիտական կուլտուրան այսօր նշանակում է տնտեսավարել ինտենսիվորեն: Իսկ դա նշանակում է քիչ ծախսումներով հասնել ավելի մեծ վերջնական արդյունքների, այսինքն՝ էկոնոմիկան դարձնել իրոք խնայողական: Այդ ամենը տնտեսավարից պահանջում է ունենալ նորի սուր զգացում, լինել խելոք ու խնայող տնտեսավարի տիպար: Եվ, թերևս, ամենագլխավորը այն սովորությունից ժամանակին հրաժարվել կարողանալն է, որն այսօր անվանվում է տնտեսական մտածողության իներցիա:

Ժամանակակից տնտեսագիտապես կուլտուրական ղեկավարին հատուկ է իսկական նորի մշտական որոնումը: Այդ որոնումը, անշուշտ, ուղեկցվում է պայքարով ու դժվարություններով: Տնտեսագիտապես կուլտուրական տնտեսավարը պարտավոր է մերժել գերատեսչականության ու տեղայնության, վոլյունտարիզմի և դոգմատիզմի միտումները: Նա իրեն թույլ չի տա ռեզերվները թաքցնել «նեղ օրվա համար», իներցիայով թողարկել ժողովրդական տնտեսությանը ոչ պետքական արտադրանք, «խնայել» աշխատանքի պաշտպանության և անվտանգության տեխնիկայի միջոցների հաշվին: Այլ խոսքով, նա իր համար չպետք է որոնի «թեթև կյանք», պետք է ունենա անհրաժեշտության դեպքում տիրող վիճակին դեմ գնալու ունակություն:

Իհարկե, ամեն ոք չի կարող գործել նման ձևով, ամեն մեկը չի համաձայնի դիմել «ռիսկի»: Ինչպիսի՞ հիմնական հատկություններով պետք է օժտված լինի մարդը, որպեսզի բավարարի վերը նշված պահանջները: Դա, իմ կարծիքով, պետական մտածողությունն է, իր ժողովրդի առջև պարտքի զգացումը, կուսակցության տնտեսական քաղաքականության իմաստի լրիվ ըմբռնումը: Միայն նա, ով իր մեջ մշակել է այդ «համընդհանուր» հատկությունները, կարող է այսօր համարվել տնտեսագիտապես կուլտուրական մարդ:

**Թղթ.**— Այո, ղեկավարի տնտեսագիտական կուլտուրան լայն հասկացություն է... Գուցե Դուք ուզում եք կանգ առնել այդ հասկացության ևս ինչ-որ բաղադրամասերի վրա:

**Բունիչ.**— Կուզեի ավելի մանրամասն խոսել տնտեսագիտական անկուլտուրականության երկու երևույթների մասին, որոնք հիշատակվեցին վերը:

Առաջինը ենթակաների աշխատանքի լրիվ կարգավորումն է: Իհարկե, մեր գործունեության մասշտաբների ընդլայնումը ենթակաների պարտականությունների շրջանակն ավելի հստակորեն սահմանելու ձգտում է ծնում: Դա կառավարման կատարելագործման օրինաչափ, անհրաժեշտ պրոցես է: Բայց չպետք է մոռանալ, որ

բուն կատարողների ստեղծագործական գործունեության համար ոչ ստանդարտ իրավիճակներում ելք գտնելու ռեզերվ պետք է ունենալ:

Գիտնականները հաստատում են, որ գոյություն ունի ցուցումների, նորմաների, գրավոր կարգադրությունների որոշակի սահման, որոնցով ենթական ի վիճակի է օգտվել ամենօրյա աշխատանքում, իր աշխատատեղում: Իրոք, արդյոք հազվադե՞պ են ծագում այնպիսի պարադոքսային իրավիճակներ, երբ յուրաքանչյուր ցուցում առանձին վերցրած օրինական է և առարկություններ չի առաջացնում, բայց դրանց ընդհանուր թիվն այնպիսին է, որ ենթակաների համար պարզապես դժվար է դրանց հետևելն ու ըմբռնելը: Դրա հետևանքով կորչում են անգամ ամենաարժեքավոր ցուցումների իմաստն ու նշանակությունը: Փորձված տնտեսավարները գիտեն, որ ամեն տեսակ գրավոր կարգադրությունների հեղեղը կարող է երբեմն հանգեցնել այն բանին, որ պարզապես դադարում են դրանց ուշադրություն դարձնել: Մյուս կողմից, եթե ենթական անընդհատ ստանում է մանր ցուցումներ և զգում է մշտական մանրախնդիր վերահսկողություն, ապա այդպիսի պայմաններում նա արդեն ի վիճակի չէ տեսնելու ոչ իր հաջողությունները, ոչ էլ անհաջողությունները: Եվ ի վերջո ծնվում են անտարբերություն, անգործություն...

Ցավոք սրտի, տնտեսագիտական անկուլտուրականության մի երևույթ ևս շատ տարածված է: Պարզվում է, շատ ղեկավարներ առաջնորդվում են յուրատեսակ «տեսությամբ», որի համաձայն իրենք պարտավոր են միշտ լինել «բարձունքի վրա» (և դա նույնպես յուրահատուկ կերպով է մեկնաբանվում), իբր, իրենց թույլատրված է խիստ լինել, մարդկանց հետ մտերմավարի չվերաբերվել, թույլ չտալ տնավարություն:

Տնտեսագիտական կուլտուրայից և առհասարակ կուլտուրայից զուրկ ղեկավարը միայն կարող է կարծել, որ բարձր տոնը կամ մարդկային ու գործնական փոխհարաբերության տարրական նորմերը քամահրելը հեղինակության ինքնահաստատման և ամրապնդման միջոց են: Իսկական ղեկավարի արժանիքը դրանում չէ, այլ ցանկացած իրավիճակում արդարացի լինելու, ցանկացած պարագաներում մարդկային արժանապատվությունը չնսեմացնելու կարողության մեջ է:

Այդ կարողությունից օգուտը փոխադարձ կլինի: Եթե վերցնենք միայն գործնական ասպեկտը, ապա նրա հմտությունը հարյուրապատիկ անգամ կփոխհատուցվի ենթակաների բավարարվածությամբ, հարմարավետության զգացումով, նրանց ստեղծագործական կարողությունների առավել լրիվ բացահայտմամբ: Իսկ դա, վերջին հաշվով, կհանգեցնի ամբողջ կոլեկտիվի ավելի լավ աշխատելուն: Ահա ինչպիսի նյութական «շահույթի» է վերածվում ղեկավարի տնտեսագիտական կուլտուրան:

**Թղթ.—** Պավել Գրիգորևիչ, մեզնից յուրաքանչյուրն իր կյանքի մեծ մասում հանդիսանում է ամեն տեսակի բարիքների՝ տների և մեքենաների, հացի և կոշկի, գաղափարների ու նկարների... արտադրող: Եվ գործունեության այդ կողմով մենք ընդգրկված ենք հասարակության տնտեսական փոխադարձ կապերի մեջ: Մինչև այժմ Դուք խոսեցիք արտադրող-մարդու տնտեսագիտական կուլտուրայի մասին: Բայց չէ որ մենք նաև այդ նույն բարիքների՝ տների, հացի, գաղափարների... սպառողներն ենք: Սպառելով այդ բոլորը, մենք կրկին ընդգրկվում ենք հասարակության տնտեսական համակարգի մեջ, միայն թե այլ մուտքից: Եվ մեր գործունեության այդ կողմը նույնպես իր նկատմամբ պահանջում է ուշադրություն: Ըստ երևույթին, տնտեսագիտական կուլտուրայի հասկացությունը տարածվում է նաև սպառող-մարդու վրա:

**Բունիչ.—** Իհարկե: Սպառման և՛ ձևում, և՛ եղանակում մարդը կարող է իրեն տնտեսագիտական ու այլ տեսակետներից դրսևորել որպես կուլտուրական կամ անկուլտուրական անձնավորություն: Ըստ երևույթին, ճշմարտության բաժին կա վերջին ժամանակ տարածված կատակում. «Տար ինձ ցանկացած տուն, և ես կասեմ, ով է դրա տերը»:

Իմ կարծիքով, նյութական բարիքների սպառման վերաբերյալ կարելի է առանձնացնել տնտեսագիտական կուլտուրայի երկու մակարդակ: Տարրական մակարդակում այդ կուլտուրան, օրինակ, պահանջում է՝ շենքից դուրս գալիս մարել լույսը, հարգալից վերաբերվել հավաքարարի աշխատանքին, սիզամարգերի վրայով չքայլել, հիշել, որ հացը ժողովրդական հարստություն է... Այո՛, այո՛, մի ծիծաղեք... Ցավոք, անդառնալիորեն մոռացության չեն մատնվել բոլորիս հայտնի այդ կոչերը: Իսկ



դա ի՞նչ է նշանակում: Դա նշանակում է, որ մեր մեջ տակավին կան մարդիկ, որոնց կարելի է ուղղել նման կոչերը...

Գործերն ավելի բարդ են սպառման կուլտուրայի երկրորդ մակարդակում: Այստեղ չկան միանգամայն միանշանակ պահանջներ, վերջիններս հեշտ իրագործելի չեն և շատ բան է սպասվում անել հասարակական կարծիքի դաստիարակությամբ: Խոսքը, Դուք արդեն հասկացաք, վերաբերում է բոլորովին վերջերս երևան եկած սոցիալական ախտին՝ իրապաշտությանը, որը կյանքի նկատմամբ քաղքենիական, սպառողական մոտեցման «վերջին» տարատեսակն է:

**Թղթ.—** «Նոր հիվանդություն»... Դուք նկատի ունեք, որ մեր մարդկանց նախկին սերունդները վարակված չե՞ն եղել այդ ախտով:

**Բունիչ.—** Դուք ինձ ամենևին էլ ճիշտ չհասկացաք: Սպառողականությունը, որպես բացասական սոցիալական երևույթ, ծնվել է տակավին այն դարաշրջաններում, որոնք հիմնված էին մարդու կողմից մարդուն շահագործելու վրա: Սպառում առանց ստեղծելու, սպառում ուրիշի աշխատանքի հաշվին՝ ահա սպառողականության սկզբնական ձևը: Կապիտալիստական արտադրական հարաբերությունների ժամանակ աշխատանքի օտարումն անհատին կողմնորոշում է դեպի սպառում: Չէ որ, եթե աշխատանքը սոսկ կյանքի պահպանման միջոց է, ապա բնական է, որ մարդու համար առաջին պլան է քաշվում սպառումը: Ընդ որում այն զարգանում է աններդաշնակորեն. ոտնահարվում են նյութական և աստիճանական անկում ապրում հոգևոր պահանջմունքները:

Մեր երկրում դեռ վերջերս գրեթե բոլոր նյութական բարիքների ու ծառայությունների սպառման մակարդակը զգալիորեն ցածր էր ռացիոնալ նորմաներից: Դա վերաբերում է սննդին, բնակարանային պայմաններին. բնակարանների, հագուստի, կենցաղային տեխնիկայի և այլնի չափերին ու հարմարավետությանը: Ավելորդ չէ հիշեցնել, որ ընդամենը 20 տարի առաջ բնակչության մեկ շնչին ընկնող եկամուտները կրկնակի անգամ ցածր էին ներկայիս եկամուտներից, 100 ընտանիքին ընկնում էր չորս անգամ քիչ հեռուստացույց, ութ անգամ պակաս սառնարաններ:

Այն ժամանակ խելամիտ սպառմանը մոտենալը կնշանակեր ամենից առաջ կտրուկ ավելացնել սպառումը տարբեր բնագավառներում: Հարկավոր էր բարձրացնել ապրանքների ու ծառայությունների մեծ մասի առաջարկը և բնակչության գնողունակությունը: Ըստ էության գերսպառման վտանգ գոյություն չուներ: Նույնիսկ միջին սերնդի մարդիկ կարող են հիշել, թե ինչպես հեռուստացույց ունեցող երջանիկ մարդու սենյակում երեկոյան հավաքվում էին ամբողջ կոմունալ բնակարանի բնակիչները...

Այժմ իրավիճակն սկզբունքորեն այլ է: Թեպետ սննդամթերքների ու արդյունաբերական շատ ապրանքների սպառման ռացիոնալ նորմային մենք դեռևս չենք հասել, բայց դրան ավելի ենք մոտենում: Շատ այլ ապրանքներով արդեն դրան հասել ենք: Այսօր հեռուստացույցների, ռադիոընդունիչների, մագնիտոֆոնների, միկրոհաշվարկիչների, սառնարանների, լվացքի մեքենաների, բազմաթիվ այլ ապրանքների պատկառելի զինանոցը, որ գտնվում է մեր տրամադրության տակ և կոչված են տնային տնտեսությունը վարելու, հանգիստն անցկացնելու համար, ոչ մեկի մեջ զարմանք չի առաջացնում:

Արդյոք հարմարավետություն ստեղծող իրերի թիվն այսուհե՞տև էլ աճելու է: Անպայման: Ահա և հրատապ է դարձել սպառման կուլտուրայի պրոբլեմը, այդ իրերի գործածման պրոցեսը խելամիտ հունով տանելը: Այդ են պահանջում հասարակության շահերը, իրենց իսկ՝ սպառողների շահերը:

**Թղթ.—** Մեր հասարակության հիմնական նպատակը համակողմանի, ներդաշնակ զարգացած անհատի ձևավորումն է: Այդ անհատն ապրելու է հարուստ հոգևոր կյանքով: Հետևաբար, նրան միգուցե կբավարարի նյութական բարիքների միայն շատ սահմանափակ հավաքածուն, այդպես չէ՞ արդյոք:

**Բունիչ.—** Ո՛չ, այդպես չէ՛: Ծգնավորության քարոզը խորթ է զարգացած սոցիալիզմի հասարակությանը: Անհատի համակողմանի զարգացմանը հակացուցված է նյութական բարիքների պակասը:

**Թղթ.—** Իսկ ինչպե՞ս լուծել այդ հակասությունը տնտեսագիտական կուլտուրայի տեսակետից: Մի կողմից անհատը կարիք ունի որոշակի նյութական բարիքների,

իսկ մյուս կողմից՝ դրանց սպառումը սպառնում է ծնել սպառողական հոգեբանություն, իրապաշտության հիվանդություն...

**Բունիչ.**— Այստեղ հակասություն կա: Այն բավականաչափ բարդ է: Անհատի համակողմանի զարգացմանը, որի մասին նոր խոսեցի, հակացուցված են նյութական բարիքների և՛ պակասը, և՛ առատությունը, գերսպառման բեռը: Տարբեր տեսակի շեղումները՝ առատ սնունդը, «հեղինակավոր» իրերի հետևից ընկնելը, որոնք սոսկ «ուրիշներից վատ չլինելու» համար են, նյութական հետաքրքրությունների գերիշխումը հոգևորի նկատմամբ և այլ անցանկալի երևույթներ առաջին հայացքից հակադրվում են ճգնավորությանը: Բայց միայն առաջին հայացքից: Այդ երկու բևեռները տանում են միանման արդյունքի՝ անձի ինքնակողոպտման:

Ուստի, շարունակելով ընդլայնել արտադրությունն ու սպառումը, մենք չենք պատրաստվում իրերը դարձնել կյանքի գլխավոր նպատակը: Սոցիալիստական հասարակությունը դեմ է այն բանին, որ իրերը դառնան անձի հեղինակության ու արժեքի չափանիշ:

Միակ ճիշտ ելքը, որ հարաբերակցվում է և՛ գործերի ռեալ վիճակի, և՛ տնտեսագիտական կուլտուրայի պահանջների հետ, սպառման ինքնասահմանափակումն է:

Մենք արդեն խոսեցինք այն մասին, որ ոճը՝ դա մարդն է: Կարելի է ավելացնել, որ ոճը նաև պահանջմունքների հզոր կարգավորիչ է, որը հոգեբանական միջոցներով պայմանավորում է դրանց բավարարման եղանակները: Սպառման եղանակի մեջ արտացոլվում են գեղագիտական ճաշակը, մարդու նյութական պայմաններն ու հնարավորությունները, որոշակի բարիքների նկատմամբ նրա սովորությունները, աշխարհայացքային կողմնորոշումները և անգամ հասարակության, այն մարդկանց նկատմամբ վերաբերմունքը, որոնց հետ նա ապրում է:

Ես արդեն ասացի, որ ճգնավորական ապրելակերպը, «երկրային բարիքներից» հրաժարվելը անխոհեմություն է: Յուրաքանչյուր բավարարված պահանջմունք պետք է մարդուն ուրախություն պարգևի: Ընդգծեցի, որ լավ, բարձրորակ, գեղեցիկ ու նորաձև իրերի նկատմամբ մարդու ձգտումը, եթե դրանց ձեռք բերման համար միջոցները վաստակվել են ազնվորեն, իր մեջ ոչ մի վտանգավոր ու անբարոյական տարր չի պարունակում: Խոսեցինք, որ վտանգավոր է միայն ապրանքային ֆետիշիզմը, «իրապաշտությունը», երբ իրը արժեք է ձեռք բերում ոչ թե իր կիրառական, գործառնական հատկություններով, այլ խորհրդանշական հատկություններով՝ վարկով, իրի տիրոջ՝ որոշակի սոցիալական խմբի պատկանելությամբ, մյուսների նկատմամբ նրա գերազանցությամբ: Դա հանգեցնում է մարդու արժանիքները սեփականության մեծությամբ չափելուն: Եվ այդ ժամանակ իրերի աշխարհը մարդու առջև սահմանափակում է բարձր հոգևոր հետաքրքրությունները: Խոսեցինք, որ նման հոգեբանությունը շատ հաճախ հանգեցնում է խոշոր կամ մանր շեղումների:

Ամենաբնական ու խելամիտ ելքը սպառման ոլորտում տնտեսագիտական բարձր կուլտուրայի, սպառման կուլտուրայի դաստիարակումն է, որը մղում է ինքնակարգավորման, երբ մարդն ինքն է կանոնավորում իր պահանջմունքները, դրանցից ընտրելով միայն խելամիտն ու բանականը: Իսկ ինչպիսի՞ պահանջմունքները կարելի է խելամիտ անվանել: Այնպիսի պահանջմունքները, որոնց բավարարումն անհրաժեշտ է տվյալ պատմական պայմաններում աշխատուժի նորմալ վերարտադրման և անհատի համակողմանի զարգացման համար: Այլ կերպ ասած, պահանջմունքները խելամիտ են, եթե դրանք ապահովում են մարդու նորմալ կենսագործունեությունը. սնունդը, բնակարանը, առողջությունը, կրթությունը, պրոֆեսիոնալ պատրաստությունը, ազատ ժամանակն անցկացնելը, ինֆորմացիա ստանալը և այլն:

**Թղթ.**— Ստացվում է, որ խելամիտ պահանջմունքները միատեսա՞կ են բոլոր ժամանակներում և բոլորի համար:

**Բունիչ.**— Անշուշտ, ոչ: Հասարակական զարգացման տարբեր փուլերում խելամիտ պահանջմունքներն էապես տարբերվել են: Օրինակ, ինֆորմացիայի պահանջը 60 տարի առաջ բավարարվում էր հիմնականում մամուլի օգնությամբ: Այնուհետև ինֆորմացիայի այդ աղբյուրին ավելացավ ռադիոն: Իսկ հիմա մարդկանց մեծ մասին թվում է, որ մեր ինֆորմացվածությունը միանգամայն անբավարար կլինի առանց հեռուստացույցի...

Բացի այդ, զանազան պահանջմունքներ գոյություն ունեն նաև միևնույն ժամանակ ապրած տարբեր մարդկանց համար: Մեկը ավելի շատ է գնահատում տնային հարմարավետությունը, իսկ մեկն էլ՝ լեռնադահուկային սպորտը... Մարդիկ տարբեր են մնում միշտ և ամեն ինչում: Այդ պատճառով էլ ռացիոնալ սպառումն ունի իր վերին և ստորին սահմանները: Մեզ համար կարևոր է այն բանը գիտակցելը, որ դրանք սկզբունքորեն գոյություն ունեն, որ ամեն ոք իր համար պետք է գտնի դրանցից անհրաժեշտը:

**Թղթ.**— Բայց, Պավել Գրիգորևիչ, ըստ իս, այդ վերին և ստորին սահմանները պարզապես ցույց տալը՝ միայն գործի կեսն է: Ասենք, ցույց տանք, որ հաջորդ տարի տաս ընտանիքի հաշվով հեռուստացույցների խելամիտ կարիքը լինելու է 10 (ստորին սահման) և 15 (վերին սահման): Չէ որ պետք է այդ սահմանները օբյեկտիվորեն հիմնավորել...

**Բունիչ.**— Սպառման խելամիտ սահմանները որոշելը բարդ հարց է: Դա համեմատաբար հեշտ է որոշել, երբ, ասենք, հարցը վերաբերում է սննդին: Բժիշկները ստույգ գիտեն, թե մեր օրգանիզմը սպիտակուցների, ճարպերի, ածխաջրերի, վիտամինների որքան պահանջ ունի և դրա հիման վրա էլ կազմում են սննդի համապատասխան նորմաները:

Այլ են ազատ ժամանցի առարկաները: Դրանց համար միանգամայն օբյեկտիվ նորմաներ ու չափանիշներ չկան: Մեր երկրում արդեն մի քանի տարի է, ինչ մշակվում են ռացիոնալ սպառման բյուջեի չափերը: Դրանում պարունակվող նորմատիվների ցուցակն ամենից առաջ նախատեսված է արտադրության համար: Այդ միջին ցուցանիշները մասսայական պահանջարկ ունեցող ապրանքներ թողարկող ճյուղերի համար յուրատեսակ կողմնորոշիչներ են: Դա, կարծես, էկոնոմիկային ուղղված կենտրոնացված հասարակական պատվեր է: Նորմատիվային ցուցանիշներ մշակելիս գիտնականներն ամենից առաջ ուսումնասիրում են ժամանակակից մարդու պահանջմունքների զարգացումը, հաշվի են առնում սպառողների կարծիքները, փորձագետների գնահատականները և միջազգային փորձը: Անշուշտ, նկատի է առնվում նաև այս կամ այն առարկայի սոցիալական նշանակալիությունը, դրա դերն անհատի զարգացման գործում:

Մեր զրույցի վերջում ուզում եմ նշել, որ խելամիտ պահանջմունքների ձևավորումը հնարավոր է միայն կոմպլեքսային հիմքի վրա: Բավական չէ բացահայտել պահանջմունքները և արդյունաբերությանը համապատասխան առաջադրանք տալ: Պետք է բարձրացնել սպառման կուլտուրան: Մենք դեռ մինչև վերջ չենք գիտակցում պահանջմունքների մասին գիտելիքների մարդասիրական նշանակությունը: Պետք է ավելի շատ, ավելի վառ ու պարզ գրել ու խոսել սպառման կուլտուրայի մասին: Ոչ թե տալ պատրաստի դեղատոմսեր, այլ միլիոնավոր մարդկանց մեջ մշակել այդ կուլտուրային տիրապետելու ձգտում:

Մարդկանց մեջ հարկավոր է դաստիարակել ««հակասպառողական» պահանջմունքներ, կյանքի կոնկրետ պայմաններին համապատասխան գիտակցական ինքնասահմանափակման, ինքնավերահսկման կարողություն: Իմ կարծիքով, այստեղ շատ կարևոր է վարքագծի հոգևոր դրդապատճառների դաստիարակումը: Երկրի և ժողովրդի հանդեպ պարտքի զգացում, աշխատանքի նկատմամբ կուսակցական, պետական մոտեցում՝ այս հատկանիշները սպառման կուլտուրայի ձևավորման համար հիմնականն են: Հասարակության հանդեպ իր պատասխանատվության բարձր գիտակցություն ունեցող մարդը, երկրի տիրոջ զգացումով տոգորված, կոլեկտիվիստական ոգի ունեցող մարդը իր աշխատանքային պարտականություններին, իր պահանջմունքների բավարարմանը վերաբերվում է բարոյական բարձր դիրքերից, ըստեղծագործաբար: Եվ դա դառնում է նրա կուլտուրական զարգացման ու հոգևոր հարստացման գործոնը:

---

# ԷԿՈԼՈԳԻԱՆ ԵՎ ՄԱՐԴՈՒ ԱՌՈՂՋՈՒԹՅԱՆ ՊԱՀՊԱՆՈՒԹՅՈՒՆԸ

**Ա. ՀԱՅՐԻՅԱՆ**
Բժշկական գիտությունների դոկտոր

**ՎԵՐՋԻՆ ԵՐԿՈՒ-ԵՐԵՔ** տասնամյակում ավելի ակնհայտ է դարձել, որ հասարակական առաջընթացը, գիտատեխնիկական հեղափոխությունը, իրենց հետ բերելով անհամեմատ շատ բարիքներ, միաժամանակ ունենում են բացասական ազդեցություն: Քաղաքակենտրոնացումը և գիտատեխնիկական առաջընթացը «ինդուստրիալ հեղափոխությունների» ձևով ներխուժելով մարդու կյանքի տարբեր ոլորտները, փոխելով նրա շրջակա միջավայրը, ներազդում են նաև շատ հիվանդությունների տարածման, կառուցվածքի ու ընդգրկման սահմանների վրա:

Բժշկությունը որքան ավելի շատ հաղթանակներ է հաջողվում տանել առաջներում լայնորեն տարածված վարակիչ հիվանդությունների դեմ, դրա համեմատ բնակչության հիվանդության կառուցվածքում այնքան ավելի նկատելի են դառնում, առաջին պլան են մղվում այն պաթոլոգիաները, որոնց առաջացման ու տարածման մեջ առաջատար դեր են խաղում շրջկա միջավայրի հակաբնական փոփոխությունների և ապականման հետ կապված գործոնները:

Արդի հասարակությանը բնորոշ այդ միտումն ընդգրկում է արդյունաբերապես զարգացած նորանոր ռեգիոններ, ընդսմին վերջին ժամանակներս չի բացառում անգամ գյուղական շրջանները: Մարդկանց առողջության վրա էկոլոգիական հավասարակշռության խախտումների ազդեցությունն իր արտահայտությունն է գտնում քաղաքակրթության և քաղաքակենտրոնացման հետևանք համարվող հիվանդությունների տարածմամբ: Ներկայիս ախտաբանական պրոցեսի ձևավորման մեջ բժշկությունը հանդիպում է իր համար նոր իրավիճակների, երբ հաճախ դժվար է լինում պարզել տարբեր հիվանդությունների առաջացման պատճառները:

Հայտնի է, որ մարդն իր տևական էվոլյուցիայի ընթացքում միշտ ենթարկվել է արտաքին միջավայրի ամենատարբեր գործոնների ազդեցությանը, կատարելագործվել են նրա տարբեր պաշտպանական մեխանիզմները, մարդու օրգանիզմը ձեռք է բերել շրջակա միջավայրի փոփոխություններին հարմարվելու ունակություն:

Բայց ինդուստրիալ հասարակության ներկա պայմաններում մարդու օրգանիզմը բախվում է այնպիսի վտանգավոր գործոնների, որոնց նա երբեք չի առնչվել իր բազմադարյա անցյալում: Երկրագնդի էկոլոգիական համակարգի փոխադարձ բարդ կապերում, հատկապես վերջին տասնամյակներին, ձևավորվել են արտաքին նոր գործոններ, որոնք չափազանց ինտենսիվորեն են ներգործում կենդանի օրգանիզմի ֆիզիոլոգիական ամբողջականության և գենետիկ կառուցվածքի վրա: Դրանցից են՝ օդը, ջուրը և հողը աղտոտող արդյունաբերական թափոնները, ժողովրդական տնտեսության մեջ լայնորեն կիրառվող ախտահանիչ ու լվացող միջոցները, գյուղատնտեսության բնագավառում օգտագործվող թունաքիմիկատները և քիմիական պարարտանյութերը, աղմուկը, աշխարհի որոշ շրջաններում ճառագայթման ավելացումը և այլն:

Մոլորակի վրա մարդու ունեցած ազդեցությունը կապված է հիմնականում նրա տնտեսական գործունեության հետ: Յուրացնելով բնության հարստությունները՝ մարդիկ ոչ միշտ են մտածում իրենց էկոլոգիական միջամտության հետևանքների մասին: Ոմանց թվում է, թե մեզ շրջապատող աշխարհը կարելի է անսահման տևական վերափոխումների ենթարկել:

Հայտնի է, որ Մեծ Բրիտանիայում այլևս չկան մաքուր բնական լանդշաֆտներ, մեծ փոփոխությունների է ենթարկվել անգամ Շոտլանդիայի և Ուելսի լեռնային շրջանների բուսականությունը: Մարդու միջամտությունն այն աստիճան է փոխել Մեծ Բրիտանիայի բնությունը, որ անգլիացի աշխարհագրագետները չեն կարողանում ներկայիս լանդշաֆտը վերլուծել դրա ձևավորման մերձավոր պատմությունից անկախ:

Հարկ է հիշել, որ մարդու՝ բանականությամբ ուղղորդվող գործունեությունը կարող է հանգեցնել երկրի մակերեսի էկոլոգիական հավասարակշռության այնպիսի փոփոխությունների, որ այլևս հնարավոր չի լինի վերականգնել դրանք: Այս առնչությամբ տեղին է մեջբերել Ֆ. Էնգելսի խոսքերը. «Սակայն շատ էլ չհրապուրվենք բնության դեմ տարած մեր հաղթանակներով: Յուրաքանչյուր այդպիսի հաղթանակի համար նա մեզնից վրեժխնդիր է լինում: Այդ հաղթանակներից յուրաքանչյուրը, ճիշտ է, առաջին հերթին ունենում է այն հետևանքները, որ մենք նկատի էինք առել, բայց երկրորդ ու երրորդ հերթին ունենում են միանգամայն այլ, չնախատեսված հետևանքներ, որոնք շատ հաճախ ոչնչացնում են առաջինների նշանակությունը»:

Շրջակա միջավայրի պահպանության հարցն առանձնակի սրությամբ է դրվում ներկայումս, երբ գիտատեխնիկական առաջընթացի, արդյունաբերության և գյուղատնտեսության ինտենսիվ զարգացման հետևանքով դրա կրած փոփոխությունների պայմաններում առաջանում և տարածվում են «քաղաքակրթության ու քաղաքակենտրոնացման» այնպիսի ախտեր, որոնք ստիպում են ավելի շատ մտահոգվել առողջների առողջությամբ, քան հիվանդների հիվանդությամբ:

Մարդիկ, ճիշտ է, մեծ ուշացումով, բայց սկսում են հասկանալ, թե բնությանը և իրենց առողջությանն ինչպիսի վնաս կարող է պատճառել արդի տեխնիկայի ու քիմիայի նվաճումների չափից ավելի լայն կիրառումը: Ներկայումս շատ տեղերում արդեն կատարված փաստից հետո հսկայական ջանքեր են գործադրվում ստեղծելու «վերականգնող էկոլոգիական համակարգ», որն ապահովեր բնության մեջ խախտված հավասարակշռության վերականգնումը հանուն մարդկանց առողջության և կենսաբանական այլ օբյեկտների պահպանության:

Ներկայիս այդ գլոբալ պրոբլեմի մեջ հստակ առանձնանում են երեք ասպեկտներ, որոնցից յուրաքանչյուրը պահանջում է իր պատշաճ գնահատականը: Դրանք են՝ շրջակա միջավայրի պահպանությունը հետագա աղտոտումից, առողջ մարդկանց առողջության պահպանումը շրջակա միջավայրի կառուցվածքի խախտման հետևանքներից և շրջակա միջավայրի բնականոն էկոլոգիական հավասարակշռության վերականգնումը:

Հարկ է նշել, որ բնական միջավայրի վերականգնման աշխատանքները հաճախ պահանջում են արտակարգ միջոցներ և հսկայական ջանքեր, որովհետև հաճախ այդ փոփոխություններն այնքան մեծ են լինում, որ դրանց վերականգնումը կապված է լինում մեծ ծախսերի հետ, որոնք երբեմն գերազանցում են բնական ռեսուրսների անխնա օգտագործումից ստացված օգուտը:

Ասվածից հետևում է, որ ներկայումս անհրաժեշտ է բոլոր հնարավոր միջոցներով տնտեսական զարգացումը դարձնել շրջակա միջավայրի պահպանությանը նպաստող լծակներից մեկը, առանց դրա անհնար է կասեցնել բնության աղտոտումը: Ամենուրեք, որտեղ հնարավոր է, պետք է ստեղծել էկոլոգիական և տնտեսական օգուտի օրգանական երկմիասնություն: Բնության պահպանությունը և դրա խախտված հավասարակշռության վերականգնումը հարկավոր է դիտել որպես արդի մարդկային հասարակության առաջընթացի կարևոր գործոն:

Իսկ որո՞նք են արտաքին բացասական գործոնները, որոնք, որպես արդի իրականության հետևանք, կարող են հանդիպել մեզ շրջապատող աշխարհում: Դրանցից են, ամենից առաջ, քիմիական բնույթի վնասակար նյութերը, որոնք գոյանում և հանդիպում են արդյունաբերության, գյուղատնտեսական արտադրության մեջ, տրանսպորտում ու կենցաղում: Գիտության և տեխնիկայի զարգացման արդի փուլում մարդկանց առողջության ու կյանքի համար վնասակար են միջուկային էներգիայի, ռադիոակտիվ պրոտոնների փորձարկման հետևանքով կուտակված ճառագայթումը, ռենտգեն ճառագայթների, աղմուկի և թրթռումների ներգործությունը:

Մարդու օրգանիզմի վրա բացասաբար ներազդող գործոններից է նաև սննդի նկատելի փոփոխությունը. բնական սնունդն ավելի ու ավելի մեծ չափերով է փոխարինվում արդի սննդարդյունաբերության կողմից թողարկվող արհեստական սննդամթերքներով, ինչպիսին են զտված ալյուրը, զանազան քաղցրավենիքները, մաքուր սպիրտներով ոգելից խմիչքները...

Արդի հասարակությանը բնորոշ է և նյարդային զգալի բեռնվածությունը, այսինքն՝ նյարդային համակարգի գերլարվածությունը: Այսօր մարդիկ իրենց անձնական և հասարակական կյանքում հաճախ են ենթարկվում բազմաթիվ բացասական գրգիռների ազդեցությանը, որոնք հարուցում են կոնֆլիկտային ու

ստրեսային վիճակներ: Անհետևանք չի անցնում և միջազգային լարված մթնոլորտը:

Այստեղ տեղին է հիշեցնել ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի խոսքերը՝ արտասանած ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում. խոսելով կուսակցության գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի հրատապ հարցերի մասին՝ նա անդրադարձավ և այն խնդրին, որ մարդու ազատ ժամանակի ավելի հարուստ, հետաքրքիր կազմակերպումը կթեթևացնի մարդու այն հոգեբանական ծանրաբեռնվածությունը, որ իր հետ բերում է ժամանակակից կյանքի ռիթմը: Այստեղ մեծ են առողջապահության աշխատողների անելիքները: «Նրանք,— ասաց նա,— շատ բան են անում հիվանդություններից մարդուն պահպանելու, նրա ակտիվ կյանքը երկարացնելու համար: Հասկանալի է, որ այդ ոլորտում պահանջվում է մշտական հոգատարություն և կատարելագործում, եղած թերությունների վերացում»:

Նյարդահոգեկան վիճակը կամ նյարդային գործոնը զգալի, եթե չասենք, առաջատար դեր է խաղում ներկայումս լայնորեն տարածված այնպիսի հիվանդությունների առաջացման գործում, ինչպիսին են սրտանոթային խանգարումները, չարորակ նորագոյացությունները, ստամոքսի խոցը, հիպերտոնիան և այլն:

Ուսումնասիրությունները վկայում են, որ ստրեսային վիճակների ներկայումս դիտվող հաճախականությունը բացատրվում է մարդկանց ապրելակերպի ինտելեկտուալացմամբ, ավտոմատացմամբ, քաղաքակենտրոնացմամբ, կյանքի տեմպերի արագացմամբ, որոնք մարդու օրգանիզմին հարկադրում են արագ վերակառուցվել և հանգեցնում են այն բանին, որ նա ոչ միշտ է ի զորու լինում դրան:

Արտաքին ներգործության տևողությանը և ուժին համապատասխան՝ մարդու օրգանիզմում առաջանում են ամենաբազմապիսի ռեակցիաներ: Մարդու օրգանիզմը, գործադրելով իր հարմարվողական մեխանիզմները, ինչ-որ չափով դիմանում է շրջակա միջավայրի էկոլոգիական օրինաչափությունների խախտումներին, բայց դա նրա վրա թանկ է նստում, առժամանակ հետո առաջացնելով հիվանդագին վիճակներ, ընդհանուր կամ տեղական ախտաբանական պրոցեսներ, երբեմն էլ նույնիսկ մահացու ծանր հիվանդություններ:

Մի քանի տասնամյակ առաջ լայնորեն տարածված հիվանդությունների կանխարգելմանը ձեռնարկելիս ամենից առաջ մտածում էին վարակիչ հիվանդությունները կանխելու մասին: Կազմակերպվում էին սանիտարահիգիենիկ-համաճարակային միջոցառումներ, որոնց նպատակն էր բնական շրջակա միջավայրի բացասական գործոնների, առանձին միկրոօրգանիզմների, անողնաշարավոր կենդանիների, գլխավորապես արյունածուծ միջատների ձևով հիվանդությունների հարուցիչների ու տարածողների վերացումը: Հանդիսանալով որոշակի աշխարհագրական միջավայրում համաճարակային հիվանդությունների առաջացման ու տարածման հիմնական պատճառը՝ դրանք ունեին վարակիչ և պարազիտածին հիվանդությունների ձևավորված բնական օջախներ:

Հիվանդությունների բնօջախայնության պրոբլեմը հրատապ է և մեր երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արդի փուլում, երբ շարունակվում է նորանոր տարածքների, խոպան հողերի յուրացումը, ստեղծվում են նորանոր քաղաքներ ու ավաններ:

Սակայն այժմ մարդկանց ամենից շատ անհանգստացնողը հիվանդությունների և դրանց հետ կապված պաթոլոգիաների բնական օջախները չեն: Խոսելով մարդկանց առողջության պահպանության, ծանր հիվանդությունների կանխարգելման մասին՝ ամենից առաջ հարկ է լինում մտածել բնակչության ընդհանուր հիվանդության կառուցվածքում մեծ տեղ գրավող այնպիսի պաթոլոգիաների մասին, ինչպիսին են՝ սրտանոթային հիվանդությունները, չարորակ նորագոյացությունները, նյարդահոգեկան հիվանդությունները, տրավմաները, մասնագիտական ախտերը, ժառանգական արատները և այլն: Ներկա պայմաններում բնօջախային հիվանդությունների ստիճանական հաղթահարման ֆոնի վրա ստեղծվում են մարդկանց առողջության համար վնասակար արհեստական օջախներ, որտեղ մարդու աշխատանքային գործունեությունը՝ որպես սոցիալական կատեգորիա, նույնպես անցանկալի փոփոխություններ է հարուցում շրջակա միջավայրում: Սակայն սխալ կլիներ կարծել, թե ներկայումս հանդիպող ծանր հիվանդությունների մեծ մասն անպայման գիտատեխնիկական առաջընթացի և քաղաքակենտրոնացման հետևանք է: Տարբեր հիվանդագին պրոցեսների առաջացման ու տարածման պատճառ կարող է դառնալ անհրաժեշտ սանիտարահիգիենիկ կանոնների և արտադրության մեջ անվտանգության տեխնիկայի պահանջների զանցառումը:

Սոցիալիստական հասարակության մեջ ինդուստրացման և գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման պայմաններում միանգամայն լուծելի է շրջակա միջավայրի պահպանության հետ կապված էկոլոգիական պրոբլեմը, որն ունի ո՛չ միայն բժշկական, այլև սոցիալ-տնտեսական, հասարակական-քաղաքական նշանակություն:

Մեր երկրում շրջակա միջավայրի պահպանությունը համապետական գործ է, որին հատկացվում են միլիարդավոր ռուբլիներ: Վերջին տարիներս այդ հարցի շուրջ հրապարակվել են մի շարք որոշումներ և օրենքներ: Շրջակա միջավայրի պահպանության մասին հոգատարությունը վավերացված է ՍՍՀՄ սահմանադրությամբ:

Գիտատեխնիկական առաջընթացը, նոր պայմաններ ստեղծելով արտադրության մեջ և մարդկանց կենցաղում, որոշակի տեղաշարժեր է առաջացնում ժողովրդագրական պրոցեսներում, նկատելիորեն փոփոխում է նաև բնակչության առողջական վիճակը, ուստի իր սոցիալական հետևանքներով չի կարող բժշկությանը չառաջադրել նոր պրոբլեմներ:

Ինչպես մարդկության զարգացման պատմության մեջ հանդիպող ամեն մի խոշոր երևույթ, գիտատեխնիկական առաջընթացը ևս, հասարակական կյանքը հագեցնելով նոր բովանդակությամբ, իր համար ելք է փնտրում և կարող է նյութական հիմք ծառայել մարդկանց կյանքում տեղի ունեցող նոր երևույթների տեսական հիմնավորման ու կոնկրետ ընդհանրացման համար:

Երկար տարիներ աշխատելով Արարատի շրջանի Արմաշ գյուղում՝ որպես տեղամասային հիվանդանոցի գլխավոր բժիշկ, հանգամանորեն զբաղվել եմ բնակչության առողջական վիճակի հետ ուղղակի կամ անուղղակի կապ ունեցող փաստերի ու երևույթների ուսումնասիրությամբ:

Մարդու կյանքի համար շրջակա միջավայրի ունեցած հսկայական նշանակությունը, տարբեր վարակների առաջացման գործում դրա խաղացած դերը մեզ մղում էին ջանքերն ուղղել առաջին հերթին գյուղի բնակչության սանիտարական կուլտուրայի բարձրացմանը, արտաքին միջավայրի բարելավմանը: Ամբողջ կոլեկտիվով հետևողական պայքար էինք մղում՝ բարելավելու պայմանները և, տեղի կուսակցական, սովետական մարմինների, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարների աջակցությամբ, հասանք մեծ հաջողությունների: Այժմ մեր տեղամասում, առաջվա տասը մահճակալանոց գանձան հիվանդանոցի փոխարեն, գործում է 50 մահճակալանոց ստացիոնար՝ բոլոր հարմարություններով: Այստեղ կա դեղատուն, պոլիկլինիկա, կաթնախոհանոց, սանիտարական կուլտուրայի թանգարան:

Տեղամասային հիվանդանոցի ծառայությունից օգտվող գյուղերի բնակիչների համար ապահովվել է ո՛չ միայն բուժսպասարկման պատշաճ մակարդակ, այլև բարելավվել են կուլտուր-կենցաղային պայմանները: Բուժպրոֆիլակտիկ օգնության կատարելագործումը և գյուղի բնակչության կենցաղային պայմանների զգալի բարելավումը նպաստել են ընդհանուր մահացության մակարդակի նվազեցմանը, իսպառ վերացել կամ խիստ կրճատվել են վարակիչ շատ հիվանդություններ:

Սակայն, աչքի անցկացնելով քսանհինգերեսուն տարվա վաղեմություն ունեցող հաշվետու տվյալները և դրանք համեմատելով վերջին տարիների ցուցանիշների հետ, կարելի է նկատել, որ բազմաթիվ սուր վարակիչ հիվանդությունների վերացման կամ խիստ կրճատման հետ զուգընթաց, զգալիորեն շատացել են սրտանոթային հիվանդությունների, չարորակ ուռուցքների, ալերգիկ դրսևորումների, շաքարախտի, բնածին և գենետիկ անկանոնությունների դեպքերը:

Ներկայիս ախտաբանական կառուցվածքը գնահատելիս անհրաժեշտ է հիմնավորված գիտական մոտեցում: Իր ողջ կարևորությամբ այժմ հառնել է հիվանդությունների սոցիալ-էկոլոգիական օջախայնության հարցը: Աշխատել այդ ուղղությամբ՝ նշանակում է զբաղվել արդի բժշկության և կենսաբանության հրատապ պրոբլեմներով, աշխատել առողջապահության տեսության ու պրակտիկայի սերտ միասնությամբ:

Տարբեր բնագավառի մասնագետների՝ բժիշկների, հիգիենիստների, համաճարակագետների, կենսաբանների, աշխարհագրագետների, սոցիոլոգների, կլինիցիստների, ժողովրդագիրների, գենետիկների ընդհանուր ջանքերով մշակելով հիվանդությունների սոցիալ -էկոլոգիական օջախայնության տեսություն, կարող ենք գիտական բազա ստեղծել դրանց կանխարգելման համար: Այդպիսի նըպատակային տեսությունը կարող է էական տեղաշարժ առաջացնել բժշկագիտության ոլորտում: Այն հնարավորություն կընձեռի մըշակելու մարդու տնտեսական գործունեության հետևանքով շրջակա միջավայրի խախտված հավասարակշռության՝ մարդկանց առողջության վրա բացասական ներգործող ազդեցությունը չեզոքացնելու գիտատեխնիկական, սոցիալ-տնտեսական և կազմակերպական միջոցառումներ:

## Գրախոսություն և քննադատություն

# ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆ՝ ՆՎԻՐՎԱԾ ԻՐԱՔԻ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ԵՎ ԱՐՀՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆԸ

ԱԶԱՏԱԳՐՎԱԾ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ տեղի ունեցող քաղաքական և սոցիալ-տնտեսական պրոցեսների էության լուսաբանման հետ կապված հրատապ պրոբլեմներից է ազգային-ազատագրական հեղափոխությունների մեջ բանվոր դասակարգի տեղի ու դերի, այդ պետություններում կատարվող վերափոխությունների ընթացքի ու բնույթի վրա բանվոր դասակարգի և նրա ավանգարդի՝ կոմունիստական կամ բանվորական կուսակցության ազդեցության հարցը:

Արևելքի ազատագրված երկրների մեծ մասի բանվոր դասակարգի սակավաթվությունը, նրա անբավարար գիտակցականությունը և կազմակերպվածությունը առիթ էին տալիս բուրժուական և մանրբուրժուական գաղափարախոսներին ժխտելու բանվորների բացառիկ դերը հակաիմպերիալիստական պայքարում և ազգային անկախ տնտեսության ստեղծման գործում: Այս գաղափարախոսներն էլ հենց ժխտում են բանվորների ավանգարդի՝ կոմունիստական կամ բանվորական կուսակցության՝ որպես ինքնուրույն քաղաքական կազմակերպության, գոյության անհրաժեշտությունն ու կարևորությունը:

Կարինե Սամվելյանի աշխատության մեջ իրաքյան իրականությունից բերված փաստաթղթերն ու փաստերը հերքում են այդ թյուր կարծիքները և վկայում այն մասին, որ «Իրաքի բանվոր դասակարգը միջազգային բանվորական շարժման արագ զարգացող և կազմակերպորեն ամրապնդվող ջոկատն է», որ «Իրաքի ժողովրդի ազգային-ազատագրական շարժման պատմությունը հարուստ է բանվոր դասակարգի և նրա կազմակերպությունների՝ հանուն ազգային անկախության, սոցիալական իրավահավասարության ու դեմոկրատիայի մղած հերոսական պայքարի վառ էջերով» (էջ 3): Իրաքի կոմկուսակցությունը իր ժողովրդի զավակն է ու բանվոր դասակարգի կազմակերպող և ուղղություն տվող ուժը: Հեղինակն այս եզրակացությանն է հանգում՝ հանգամանալի վերլուծելով Իրաքի բանվոր դասակարգի՝ 1958 թ. հուլիսյան հեղափոխությանը նախորդած ազգային-ազատագրական շարժման ազդեցիկ ուժերից մեկի՝ կոմկուսակցության վիճակն ու բազմամյա պայքարը: Թեմայի ընտրությունը բացատրվում է սովետական արևելագիտական գրականության մեջ այդ հարցի սակավ հետազոտվածությամբ և այդ խնդրի լուսաբանման կարևորությամբ: Հեղինակն օգտագործել է ո՛չ միայն այլ արաբագետների ուսումնասիրությունների արդյունքները, այլև Իրաքի կոմունիստական կուսակցության մի շարք կարևոր փաստաթղթեր, աշխատանքային օրենսդրությունը և միապետական Իրաքում բանվոր դասակարգի վիճակին ու արհմիություններին վերաբերող պաշտոնական վավերագրեր: Հեղինակը քննադատաբար անդրադարձել է նաև Իրաքի, արևմտաեվրոպական և ամերիկյան մասնագետների ու քաղաքական գործիչների աշխատություններին և Իրաքի ու արտասահմանյան մամուլի նյութերին:

Գիրքը բաղկացած է համառոտ ներածությունից, երեք գլուխներից, վերջաբանից և մատենագիտական ցանկից: Ներածության մեջ ներկայացված են հարցադրումը, ուսումնասիրության խնդիրներն ու նպատակը, ինչպես և աղբյուրների ու գրականության տեսությունը: Առաջին գլխում տրված է Իրաքի պրոլետարիատի կազմավորումը, բանվորական և արհմիութենական շարժման վիճակը երկրորդ համաշխարհային պատերազմից առաջ: Հեղինակն այստեղ անդրադառնում է անգլիական մանդատի տարիներին (1920—1930 թթ.) Իրաքի արդյունաբերության զարգացման առանձնահատկություններին, տարիներ, երբ «Իրաքը հիմնականում վերածվել էր Անգլիայի համար վաճառահանման շուկայի և հումքային կցորդի» (էջ 8—9), երբ «օտարերկրյա կապիտալի գերիշխումն արգելակում էր երկրի ազգային արդյունաբերության զարգացումը» (նույն տեղը):

Բանվոր դասակարգի հետևողական պայքարը հիմնականում ուղղված էր Իրաքի տնտեսությունը տնօրինող օտարերկրյա մոնոպոլիաների դեմ: Իրաքի ազգային արդյունաբերությունը հիմնականում կապված էր գյուղատնտեսական արտադրանքի վերամշակման հետ: Ֆեոդալական վերապրուկների տիրապետության և սեփական շուկայի՝ ներմուծվող ապրանքներով հեղեղվածության պայմաններում տեղական բուրժուազիան գերադասում էր ունեցած միջոցները ներդնել ոչ թե արդյունաբերության ոլորտում, այլ հողեր գնելու և առևտրավաշխառուական գործարքներում, քանի որ այդ նրան բերում էր ավելի մեծ ու առավել կայուն եկամուտներ:

Հեղինակն այստեղ ներկայացնում է միապետական Իրաքի գյուղացիների ու բանվոր դասակարգի վիճակը, գյուղացիների և քոչվորների ապստամբությունները, բանվորական շարժման առաջին քայլերը: «1930—34 թթ.,— գրում է նա,— արհմիություններն Իրաքում արդեն զգալի ուժ էին ներկայացնում: Արհմիութենական շարժումից վախեցած կառավարությունը 1934 թ. հունվարին փակեց նրանց աշխատատեղերը և բանտ նետեց շատ ակտիվ գործիչների» (էջ 25): Այս պայմաններում Իրաքի կոմկուսակցության ստեղծումը 1934 թ. մարտին «կարևոր իրադարձություն էր ազգային-ազատագրական շարժման ոլորտում: Այն ղեկավարում էր բանվորների մասսայական շարժումը հանուն տնտեսական ու քաղաքական իրավունքների» (էջ 25): Կոմունիստական կուսակցության ստեղծումը, եզրակացնում է հեղինակը, «նշանավորում է որակական մի նոր փուլ երկրի բանվորական և արհմիութենական շարժման ոլորտում: Կոմկուսակցությունը մեծ դեր է խաղացել բանվորների դասակարգային գիտակցության խորացման և նրանց շարքերի համախմբման գործում: Իրաքի կոմունիստները իր տնտեսական ու քաղաքական իրավունքների համար բանվոր դասակարգի մղած պայքարի անմիջական կազմակերպողներն ու ղեկավարներն էին»:

1944 թ. Իրաքի կոմկուսակցության առաջին կոնֆերանսում ընդունվեց մինիմում ծրագիր («Ազգային պակտ»), որով սահմանվեցին կուսակցության և ազգային-ազատագրական շարժման խնդիրները: Նույն թվականին կոմունիստները դիմեցին երկրի բանվորներին՝ «Արհմիությունը բանվորների լոզունգն է այսօր» կոչով:

Անդրադառնալով բանվորական և արհմիութենական շարժման վերելքին՝ հետպատերազմյան Իրաքում, հեղինակը վերլուծում է դրա արտաքին ու ներքին նախադրյալները: Նա հիշատակում է բանվորների գործադուլները տնտեսության տարբեր ճյուղերում, երբ տնտեսական պահանջները հաճախ զուգակցվում էին քաղաքական պահանջներով. բանվորները բողոքում էին ընդդեմ դեմոկրատական և քաղաքական իրավունքների սահմանափակումների:

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Իրաքի արհմիության գործունեության վրա մեծ ազդեցություն են գործել կոմունիստները: Բանվորների շրջանում լայն ժողովրդականություն էին վայելում ԻԿԿ կենտրոնական տպագիր օրգան «Ալ Կաիդա» («Հիմք»), ԻԿԿ-ի քրդական սեկցիայի «Ազադի» («Ազատություն»), հայկական սեկցիայի «Հիմք» արհմիութենական, «Ալ-Ումմալ» («Բանվորներ») լրագրերը: Այս գլխում վերլուծվում է նաև բանվորական և արհմիութենական շարժման վիճակը Իրաքում 1948—1952 թթ.: 1948 թվականի մայիսի 1-ին Բաղդադում և Բասրայում առաջին անգամ կայացան աշխատավորների տոնական ցույցեր: Սակայն շուտով երկրում սկսեցին ճնշել առաջադիմական ուժերին: Նուրի Սաիդի կառավարությունը 1949 թ. ցրեց նույն թվականին ստեղծված Իրաքի արհմիությունների ֆեդերացիայի Ազգային խորհուրդը, փետրվարին մահապատժի ենթարկվեցին ԻԿԿ քարտուղար Յուսեֆ Սալման Յուսեֆը (Ֆահդ) և քաղբյուրոյի անդամներ Մուհամմեդ աշ-Շաբիբին և Զաքի Բասիմը: Հարյուրավոր կոմունիստներ ու արհմիութենական ակտիվիստներ բանտերը նետվեցին:

Չնայած դաժան հալածանքներին, արհմիություններն ու կոմկուսակցությունը շարունակում էին իրենց գործունեությունը: Նավթագործների՝ 1950 թ. ապստամբությունները հանգեցրին տնտեսական բնույթի որոշ զիջումների, մասնավորապես կառավարությունն սկսեց բանակցություններ վարել օտարերկրյա նավթային ընկերությունների հետ՝ նավթարդյունահանման պայմանների վերանայման շուրջ: Հեղինակը ցույց է տալիս ապստամբական շարժման վերելքը 1952—1954 թթ. և բանվորական շարժման վիճակը 1954—1956 թթ.:

Չնայած դաժան տեռորին, 1955—56 թթ. Իրաքում նկատվում է գործադուլների և հակաիմպերիալիստական ցույցերի աճ, որոնք

* К. Х. Самбелян. Рабочее и профсоюзное движение в Ираке. «Айастан», 1983.

ուղղված էին Իրաքի և Թուրքիայի միջև կնքվող «փոխադարձ համագործակցության» պայմանագրի դեմ (այն կնքվեց 1955 թ. փետրվարին), որով և սկզբնավորվեց քաղաքի ագրեսիվ պակտը:

Հիշարժան է նաև այն փաստը, որ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Իրաքում տիրող ռեժիմի համար բանակն այլևս հուսալի հենարան չէր: 1948, 1952, 1956 թվականներին տեղի ունեցած ապստամբությունների ժամանակ ո՛չ միայն շարքային զինվորները, այլև սպաները հրաժարվում էին կրակ բացել ժողովրդի վրա և եղբայրանում էին ցուցարարների հետ: Հակաիմպերիալիստական ելույթները ճնշելու նպատակով սկսեցին ավելի հաճախ օգտագործել հատուկ ոստիկանական զորամասերի խմբեր:

Աշխատության երրորդ գլխում ներկայացված է Իրաքի բանվոր դասակարգի պայքարը միապետական ռեժիմի տապալման համար: Հեղինակը շեշտում է, որ Իրաքում հակաիմպերիալիստական ճակատի ստեղծման գաղափարն առաջ են քաշել տեղի կոմունիստները, դեռևս 1944 թվականին: Ազգային միասնության ճակատի ստեղծումը, նշված է գրքում, «երկրի բոլոր պրոգրեսիվ ուժերի նշանակալի հաղթանակն էր, այն արդյունքն էր հայրենասիրական բոլոր ուժերի միավորման ու համախմբման անհրաժեշտության: ԻԿԿ-ն դրա ըստեղծման կազմակերպիչն էր ու նախաձեռնողը» (էջ 85):

Ինչպես իրավամբ նշել է Իրաքի կոմկուսակցության Կենտկոմի անդամ Նազիհա Դուլեյմին, «Իրաքի կոմունիստական կուսակցությունը խոր արմատներ ունի մասսաների շրջանում, մեծ է նրա դերը դասակարգային, ազգային և ընդհանուր արաբական պայքարում, լայնորեն հայտնի են նրա սկզբունքները, ծրագիրն ու քաղաքականությունը: Ժողովուրդը մեծարում է հանուն իր շահերի իրենց կյանքը զոհած տառապյալ հերոսներին: Իմպերիալիզմի և ռեակցիայի ջրաղացին ջուր լցնող կեղծարարների ուժից վեր է հերքել այդ»:

Գրախոսվող աշխատությունն արժեքավոր ուսումնասիրություն է՝ ինչպես Իրաքում, նույնպես և արտասահմանում նվազ լուսաբանված բանվորական և արհմիութենական շարժման հարցերի վերաբերյալ: Գնահատելով այն որպես գիտատեսական ուսումնասիրություն՝ հարկ է նշել, որ, մեր կարծիքով, անհրաժեշտ էր ավելի մեծ ուշադրություն նվիրել միապետական շրջանում Իրաքում տիրող գործազրկության ձևերին, որոնք ճնշում էին գործադրում այդ երկրի բանուժի վրա: Անշուշտ, աշխատությունը հետաքրքրական է ինչպես մասնագետների, նույնպես և ընթերցող լայն շրջանների համար:

**Մ. ԳԱՏԱՈՒԼԻՆ**
**Տնտեսական գիտությունների դոկտոր**
**Մոսկվա**

---




Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36, գրական աշխատողներ՝ 52—66—77:

*Հանձնված է շարվածքի 22.02.85 թ.: Ստորագրված է տպագրության 20.03.85 թ.: ՎՖ 05165: Ֆորմատ՝ $70 \times 108^{1}/_{16}$: Տպագրությունը՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ., Տպաքանակ՝ 17552: Պատվեր 375:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*

Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.